# «Միջամառային գիշերվա երազ»

## “A Midsummer Night's Dream ”

Ուիլյամ Շեքսպիրի

[1593]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եազյանի* [1978]

“Though she be but little she is fierce.”

## DRAMATIS PERSONÆ

THESEUS, Duke of Athens
HIPPOLYTA, Queen of the Amazons, bethrothed to Theseus
EGEUS, Father to Hermia
HERMIA, daughter to Egeus, in love with Lysander
HELENA, in love with Demetrius
LYSANDER, in love with Hermia
DEMETRIUS, in love with Hermia
PHILOSTRATE, Master of the Revels to Theseus
QUINCE, the Carpenter
SNUG, the Joiner
BOTTOM, the Weaver
FLUTE, the Bellows-mender
SNOUT, the Tinker
STARVELING, the Tailor
OBERON, King of the Fairies
TITANIA, Queen of the Fairies
PUCK or ROBIN GOODFELLOW, Fairy
PEASEBLOSSOM, Fairy
COBWEB, Fairy
MOTH, Fairy
MUSTARDSEED, Fairy
PYRAMUS, THISBE, WALL, MOONSHINE, LION.
Other Fairies attending their King and Queen
Attendants on Theseus and Hippolyta

# Միջամառային գիշերվա երազ

ACT I. SCENE I.
Athens. Room in the Palace of Theseus. Theseus, Hippolyta, Philostrate and Attendants enter.

THESEUS.
Ե՛կ, գեղեցկուհի իմ հիպոլիտէ, շատ մօտ է ժամը մեր ամուսնութեան։ Չէ՞ որ երջանիկ չորս օր է մնում մինչեւ նոր լուսին։ Բայց, ա՜խ, այդ հինը դանդաղ է անցնում մանուկ զաւակի վաստակը խժռող զառամեալ այրու կամ խորթ մօր նման։

HIPPOLYTA.
Այդ չորս օրերը չորս գիշերի մէջ կը սուզուեն արագ։ Չորս գիշերներն էլ կ՝անցնեն երազով. նորալուսինը՝ երկնքում լարուած արծաթէ աղեղ, մեր հարսանիքը կը լուսաւորի։

THESEUS.
Գնա, փիլոստրատ, եւ երիտասարդ մեր աթենացոց կոչիր խնջոյքի, զարթեցրո՛ւ նրանց առոյգ, դիւրաշարժ բերկրանքի ոգին։ Տրտմելը թաղման դէպքի թող պահեն՝ այդ դժգոյն հիւրը վայել չէ բնաւ մեր պերճ հանդէսին։

[Philostrare exits.]

THESEUS [cont.]
Ես, հիպոլիտէ, իմ սրի ուժով քեզ ձեռք բերեցի եւ գրաւեցի սէրդ բռնութեամբ, բայց մեր պսակը ես այժմ ուրիշ ձեւով կը տօնեմ. փառքով, խնդութեամբ եւ շքեղութեամբ։

[Egeus, Hermia, Lysander and Demetrius enter.]

EGEUS.
Ողջոյն համբափայլ դուքս թեսեւսին։

THESEUS.
Շնորհակալ եմ, ազնիւ էգեւս։ Յուզուած ես, ի՞նչ կայ։

EGEUS.
Կոտրուած սրտով գանգատի եկայ իմ զաւակի դէմ։ Նա է զաւակս՝ անունը հերմիա։ Մօտ եկ, դեմետրիոս։ Ազնիւ իշխան իմ։ Աղջկաս խոստացել եմ ես այս տղային։ Ապա, լիսանդր, դու էլ առաջ եկ։ Իսկ այս պատանին, պատուական դուքս իմ, կախարդել է իմ զաւակի սիրտը։ Դո՛ւ, դո՛ւ, լիսանդր, դու իմ աղջկան յանգեր ես ձօնել եւ անբիծ սիրոյ գրաւականներ տուել ու առել, լուսնեակ գիշերով երգել ես նրա պատուհանի տակ եւ շինծու ձայնով յանգաբանել ես կեղծաւոր սէրդ։ Քո մազից հիւսուած ապարանջանով, մատանիներով, պաճուճանքներով, սնապարծութեամբ, ճարտար հնարքով, խաղալիքներով, ծաղկեփնջերով եւ քաղցրեղէնով, որ կաշառում են անփորձ պատանու սիրտը զօրութեամբ, դու գողացել ես իր ուշքն ու միտքը։ Խորամանկութեամբ յափշտակել ես աղջկաս սիրտը եւ իր ծնողի հանդէպ ունեցած հնազանդ վարքը վերափոխել ես դաժան կարծրութեան։ Բարեշնորհ դուքս իմ, եթէ իմ դուստրը ձեր ներկայութեամբ չխոստովանի, որ կ՝ամուսնանայ դեմետրիոսի հետ, ես խնդիրք կ՝անեմ, որ աթենական մեր հին օրէնքով աղջկաս բախտը թողնուի իմ կամքին. նա իմ աղջիկն է, եւ, հետեւաբար, դատը ես կ՝անեմ։ Կա՛մ նա կը դառնայ դեմետրիոսին կին, կա՛մ՝ անյապաղ մահ՝ ըստ աթենական մեր հին օրէնքի։

THESEUS.
Ի՞նչ կ՝ասես, հերմիա, եւ ասելիքդ լաւ կշռադատիր, գեղեցիկ օրիորդ, հօրդ քեզ համար աստուած համարիր։ Նա է կազմել քո գեղեցկութիւնը, նա է ձեւ տուել եւ մոմից թափել կաղապարի մէջ, եւ նրա կամքն է՝ այդ ձեւը պահել կամ թէ աւերել։

Այս դեմետրիոսը մի շատ պատուական երիտասարդ է։

HERMIA.
Լիսանդրը նոյնպէս։

THESEUS.
Իր համար, այո՛, բայց հորդ ձայնը այս մէկի կողմն է, դու պարտաւոր ես ուստի այս մէկին առաջնութիւն տալ։

HERMIA.
Երանի՛ հայրս իմ աչքով նայէր։

THESEUS.
Աչքդ պարտաւոր է հորդ կամքով նայել։

HERMIA.
Ներողութիւն եմ աղերսում, իշխան։ Ինքս էլ չգիտեմ, թէ ինչ զօրութեամբ համարձակ դարձայ. պատշա՞ճ է արդեօք իմ համեստութեան այսքան մարդկանց մօտ անկաշկանդ խօսել։ Սակայն թող ներուի իմանալ, դուքս իմ, ի՞նչ կ՝ասուի ինձ վատագոյն դէպքում, եթէ դեմետրիոսին չուզենամ առնել։

THESEUS.
Մեռնել կամ յաւէտ երդմամբ խոստանալ երբեք այր մարդու երես չտեսնել։ Ուստի, լաւ կշռիր վճիռդ, հերմիա, մատաղ արիւնդ, կեանքդ խնայիր։ Եթէ հայրական կամքին դէմ գնաս, միանձնուհու զգեստ պիտի հագնես դու եւ մութ վանքի մէջ յաւիտեան փակուես, քո ամբողջ կեանքը կ՝ապրես անպտուղ՝ պաղ, ամուլ լուսնին վհատ ներբողներ եղանակելով։ Երանի՛ նրան, ով կայտառ արեան եռքը զսպելով իբրեւ կոյս կ՝ապրի այդ ճգնութեան մէջ։ Բիւր երջանիկ է, սակայն այն վարդը, որին քաղում են, քան թէ այն մէկը, որը ծաղկում է ապրում, թառամում իր փշոտ ոստին՝ անարատ, ամուլ երանութեան մէջ։

HERMIA.

Տէր իմ, ես կ՝ուզեմ հէնց այդպէս ծաղկել, ապրել եւ մեռնել, քան թէ կուսական իմ իրաւունքը կը յանձնեմ մէկի տիրական կամքին, որի ատելի լծի տակ մտնել յօժար չէ հոգիս։

THESEUS.

Մտածի՛ր, հերմիա, ժամանակ կը տամ մինչեւ նոր լուսին, մինչեւ այն օրը, երբ սիրուհուս հետ
ես պիտի կնքեմ մի յաւէրժ դաշինք։ Կամ հպարտ եղիր այդ օրը մեռնել, եթէ ընդվզես հորդ կամքի դէմ, կամ ամուսնանալ դեմետրիոսի հետ, որին ընտրել է, կամ արտեմիսի սեղանին ուխտել ապրելու մենակ, անպսակ, ամուլ։

DEMETRIUS.

Եկ համաձայնի՛ր, իմ քաղցրիկ հերմիա։ Իսկ դու, լիսանդր, իմ անվիճելի այս իրաւունքը մի խոչընդոտիր։

LYSANDER.

Լսի՛ր, դեմետրիոս, քանի որ հայրը քեզ բուռն է սիրում, հերմիային ինձ թող, իսկ դու պսակուիր աղջկայ հօր հետ։

EGEUS.

Դու նե՛նգ ծաղրաբան։ Այո՛, իմ սէրը այս մէկի կողմն է, եւ իմ սիրոյ հետ ողջ ունեցուածքս նրան է պատկան, աղջիկը իմն է, ուրեմն նաեւ ունեմ իրաւունք ես այդ բոլորը դեմետրիոսին տալ։

LYSANDER.

Բայց ես էլ, տէր իմ, դեմետրիոսի չափ ազնուական եմ, նրա չափ հարուստ։ Նրանից աւելի ուժգին եմ սիրում, դիրքով, վիճակով չեմ զիջում նրան, գուցէ աւելի բարձր եմ նրանից։ Իսկ գլխաւորը, որ վեր է բոլոր այդ պարծանքներից, այն է, որ հերմիան նրան չի սիրում, այլ սիրում է ինձ. ինչո՞ւ ուրեմն իմ իրաւունքը ես չպաշտպանեմ։ Այս դեմետրիոսը, երեսին եմ ասում, սիրահարուած էր նեդարի

դուստր հեղինի վրայ։ Նա այդ աղջկայ հոգին գրաւեց։ Եւ խեղճ օրիորդը գժի պէս սիրում, պաշտում է սրան՝ մաշուելով այս փուչ եւ անսիրտ մարդու յեղյեղուկ սիրուց։

THESEUS.
Խոստովանում եմ, յաճախ լսած կամ եւ մտածել եմ դեմետրիոսի հետ խօսել այդ առթիւ, սակայն անձնական հոգսերով տարուած՝ միշտ մոռացել եմ։ Գնա՛նք, դեմետրիոս, դու էլ, էգեւս։ Երկուսդ էլ եկէք, ձեզ հետ առանձին խօսելիք ունեմ։ Իսկ դու, հերմիա, քո բաղձանքները պատրաստուիր ուղղել ծնողիդ կամքին, թէ ոչ՝ աթէնքի մեր հին օրէնքով, որը ոչ մի մարդ չի կարող փոխել, դու պիտի մեռնես կամ ուխտես ապրել առանձնութեան մէջ, ամուլ, անպսակ։ Ե՛կ, հիպոլիտէ։ Ի՞նչ պատահեց քեզ։ Երթանք, իմ անգին։ Դեմետրիոս, էգեւս, հետեւեցէք ինձ, մեր հարսանիքի օրուան առնչուող յանձնարարութիւն ունեմ ձեզ տալու, եւ ձեր երկուսիդ խիստ վերաբերող մի գործի մասին յատուկ խօսելու։

EGEUS.
Սիրով, իշխա՛ն իմ, խոնարհ պատրաստ ենք։

[All exit save Lysander and Hermia.]

LYSANDER.
Իմ աննման սէր, ինչո՞ւ այտերդ գունատ են այդպէս, նրանց վարդերը, ա՛խ, ինչո՞ւ այդքան արագ թօշնեցին։

HERMIA.
Գուցէ մնացին կարօտ անձրեւի, որ կարող էի ես իմ ամպամած աչքերից թափել։

LYSANDER.
Աւա՜ղ, ոչ մի տեղ ես չեմ կարդացել, ոչ էլ հեքիաթի կամ պատմութեան մէջ երբեւէ լսել, թէ հարթ է եղել անկեղծ սիրոյ ճամփան։ Պատճառը, գուցէ, տարբեր ծագումն է։

HERMIA.
Շատ ծանր է բարձրին՝ նուաստի սիրել։

LYSANDER.
Միգուցէ նաեւ պատճառը նրանց տարբեր հասակն է։

HERMIA.
Ծերը ջահէլին երբեք վայել չէ։

LYSANDER.
Կամ թէ ընտրել են բարեկամները։

HERMIA.
Օտարի աչքով սիրածին ընտրել դժոխքից վատ է։

LYSANDER.
Իսկ եթէ զոյգը յաջող է եղել, կռիւ, մահ ու ախտեր, անվերջ խուժելով նրանց բախտը դարձրել են ակնթարթային մի դատարկ հնչիւն, ստուերի պէս սթափ, երազի պէս կարճ։ Այդպէս փայլակն է խաւար գիշերին երկինք ու երկիր մէկ ցոլքով պատում, նախքան կը գոչենք. «տեսէ՛ք, փայլում է», խաւարը նրան իսկոյն լափում է. ինչ պայծառ բան կայ, ճիշտ այդպէս արագ անհետանում է։

HERMIA.
Եթէ ճշմարիտ սիրահարներին վիշտ է վիճակուած, եւ դա օրէնք է՝ սահմանուած վերից, եկ համբերանքի դաս տանք մեր վշտին, չէ՞ որ տանջուելը սիրահարների խաչն է առօրեայ, եւ երազանք, անուրջ, կսկիծ ու հառաչ, երազ ու կարօտ, հղձ ու արտասուք անբաժան են սիրուց եւ յաւէտ դժբախտ շքախումբն են նրա։

LYSANDER.
Լաւ համոզմունք է։ Ուրեմն լսի՛ր, իմ անգին հերմիա, ես մի պառաւած հօրաքոյր

ունեմ, այրի մի կին է՝ անզաւակ, հարուստ, ապրում է աթէնքից եօթ մղոն հեռու։ Նա ինձ սիրում է իբրեւ իր որդու։ Այդ տանը, հերմիա, մենք կ՝ամուսնանանք, եւ աթենական դաժան օրէնքը անզօր կը լինի մեր հետքը գտնել։ Թէ սիրում ես ինձ, վաղը գիշերով դու ծածուկ փախիր հայրական տնից։ Մի մղոնաչափ աթէնքից հեռու այն անտառի մէջ, ուր ես քեզ տեսայ հեղինէի հետ, յիշո՞ւմ ես գարնան այն առաւօտը, որ եկել էիք միասին ուխտի լաւ՛ յիշիր տեղը. այդ անտառի մէջ ես քեզ կը սպասեմ։

HERMIA.
Օ՛, իմ լիսանդր։ Երդւում եմ Էրոսի հուժկու աղեղով եւ նրա ոսկեայ զօրաւոր նետով, չքնաղ վենուսի սուրբ տատրակներով եւ սէրը հոգուն կապող մաքրութեամբ եւ այն խարոյկով, որ կարթագենի թագուհուն լափեց, երբ նենգ տրոյացին առագաստ պարզեց, տղամարդկանց սուտ ուխտերը վկայ, որոնց պէս առատ՝ երդուող կին չկայ, ճիշտ այդ անտառում քո մատնանշած վաղը գիշերով կողքիդ եմ կանգնած։

LYSANDER.
Խօսքիդ տէրը կաց։ Տե՛ս, հեղինէն եկաւ։

[Helena enters.]

HERMIA.
Ողջո՛յն, հեղինէ։ Դէպի ո՞ւր, չքնաղ։

HELENA.
Ես՝ չքնա՞ղ, միթէ՞։ Չքնաղը դու ես, որ դեմետրիոսի ուշքը տարել ես։ Օ՛, գեղեցկուհի դու իմ երջանիկ, աչքերդ՝ աստղեր, ձայնդ՝ անուշիկ, աւելի ախորժ, քան հովուի սրտին գարնան քաղցրաձայն երգը արտոյտի, երբ ցորենարտը կանաչ է կապում, երբ սալորենին ծաղիկ է թափում։ Օ՛, չքնաղատես, ինչպէս ախտերն են տարածում վարակ, գեղեցկութիւնն էլ կ՝ուզէի այդպէս բռնկուէր արագ, որ վարակուէի քո գեղեցկութեամբ, հերքով ու տեսքով նմանուէի քեզ, աչքս աչքերիդ փայլը ստանար, քո քաղցրիկ ձայնը իմ ձայնը դառնար։ համայն աշխարհին ես տէր

դառնայի, դեմետրիոսին վերցնէի ինձ մօտ, փոխարէն՝ աշխարհը քեզ տայի։ Օ՛, սովորեցրու, ինչպէ՞ս նայեցիր, որ նրա սիրտը դու գրաւեցիր։

HERMIA.
Երբ խոժոռում եմ յօնքերս վրան նա ինձ աւելի ուժգին է սիրում։

HELENA.
Իսկ ես շարունակ ժպտում եմ նրան։

HERMIA.
Ես նզովում եմ, իսկ նա սիրում է։

HELENA.
Ես աղօթում եմ, իսկ նա ատում է։

HERMIA.
Ինչքան ատում եմ, այնքան կպչում է։

HELENA.
Ինչքան սիրում եմ, այնքան փախչում է։

HERMIA.
Որ նա թեթեւ է, ի՞նչ մեղք ունեմ ես։

HELENA.
Քո մեղքը այն է, որ գեղեցիկ ես, եւ քեզ համար է թռցրել իր խելքը, ա՜խ, իմը լինէր գոնէ այդ մեղքը։

HERMIA.
Դէ, մխիթարուիր, նա իմ երեսը չի տեսնի երբեք, ես ու լիսանդրը շուտով կը փախչենք։ Երբ տեսած չէի ես դեռ լիսանդրին, աթէնքն ինձ համար դրախտ էր

անգին, այժմ ի՞նչ մնաց այդ քաղաքում վառ, դրախտը դժոխք դարձաւ ինձ համար։

LYSANDER.

Ե՛կ, հեղինէ, մեր գաղտնիքն ասեմ. վաղը ցայգին, երբ որ ֆեբոսը վսեմ արծաթ դէմքը վտակներում փայլեցնի, գոհար ցօղը կանաչների մէջ լցնի, երբ խաւարն է սիրահարին կարեկից, մենք, պաշտպանուած մութ գիշերուայ երկնքից, դարպասներով դուրս կը փախչենք աթէնքից։

HERMIA.

Այն անտառում, ուր ես ու դու իրար հետ հանգչում էինք ծաղիկներում բուրաւէտ, բացում էինք մեր սրտերը քրոջ պէս, այդ պուրակում, ուր յաճախ ենք եղել մենք, լիսանդրի հետ շուտով պիտի հանդիպենք։ Աթէնքից դուրս ուրիշ մի բախտ կը փնտրենք, նոր շրջապատ, նոր մարդկանց մէջ կը մտնենք։ Մնաս բարո՛վ, ընկերուհի մանկութեան։ Դեմետրիոսի անկեղծ սէրը վայելիր, յիշիր մեզ էլ, մեզ համար էլ աղօթիր։ Խօսքդ պահիր, լիսանդր, մեր աչքերը, անգին սէր, պիտի հիւծուեն կարօտից մինչեւ վաղը կէսգիշեր։ [Exits.]

LYSANDER.

Կը գամ, հերմինէ։ հերմիան։ Մնաս բարով, հեղինէ, մի փափագ ունեմ քեզ համար կեանքում, որ դեմետրիոսը քեզ սիրի այնպէս, ինչպէս դու ես սիրում։ [Exits.]

HELENA.

Օ՛, ոմանց բախտը ինչ բարձր է խփում։ Ինձ էլ գեղեցիկ գիտեն աթէնքում, հերմիան սիրուն է, ես էլ եմ սիրուն։ Բայց չար բախտին տես. դեմետրիոսը ինձ չի կարծում այդպէս։ Նա խճճուած է, կարծես մոլոր է, չի տեսնում այնպէս, ինչպէս բոլորը։ Նա հմայուած է հերմիայի տեսքով, իսկ ես՝ կախարդուած, արբած իրենով։ Սէրը աննշան, անարժէք մի բան կարող է փոխել սխրագործութեան, նա ոչ թէ աչքով, սրտով է նայում, ուստի էրոսին կոյր են նկարում։ Սէրը հասուն խելք եւ ճաշակ չունի, աչքերից կոյր է եւ թեւեր ունի, որ նշան է խենթ, անմիտ սլացքի։ Սէրը ընտրելիս յաճախ է խաբւում, ուստի մանուկ են նրան անուանում։ Սէրը խաղացող տղաների պէս երդւում է առատ, խաբում ինձ ու քեզ։ Ա՛խ, դեմետրիոսը

ինչ երդում ասես, նա ինձ չտուեց, հերմիային տեսաւ, նոր հրով վառուեց, այսպէս նա հալուեց, նրա հետ լուծուեց իր սիրոյ տապը, իր երդումների ամբողջ տարափը։ Գնամ, շուտ պատմեմ ես դեմետրիոսին հերմիայի վաղուայ փախուստի մասին։ Գիտեմ, նա սիրուց, խանդից խելագար, վաղը գիշերով կը շտապի անտառ։ Եթէ ես, նրա ետեւից ընկած, քօղարկեմ, թէ իր համար եմ եկած, վարձատրութիւնս անչափ առատ է, իմ այս վշտի մէջ այդքանն էլ շատ է։ Յարմար առիթն այս ես պիտի հիւսեմ, որպէսզի նրա երեսը տեսնեմ։ [Exits.]

][][

## ACT I. SCENE II.

The same. Room in a cottage. Quince, Snug, Bottom, Flute, Snout and Starveling enter.

### QUINCE.

Մեր ամբողջ խումբը էստե՞ղ է։

### BOTTOM.

Լաւ կը լինէր, որ ամէնքի անունները ջոկ-ջոկ կարդայիր, ինչպէս որ ցուցակում գրուած է։

### QUINCE.

Էս թղթի վրայ գրուած են միայն էն մարդկանց անունները, որոնց յարմար են գտել ամբողջ աթէնքում, որ դքսի եւ դքսուհու առաջ մի ներկայացում խաղան նրանց հարսանեաց գիշերը։

### BOTTOM.

Սիրելի սերկեւիլ պետրոս, դու նախ եւ առաջ մեզ ասա, թէ ի՞նչ ներկայացում է. ի՞նչ է դրա նիւթը, յետոյ դերասանների անունները ջոկ-ջոկ կարդայ ու էդպէս հասիր վերջին կէտին։

QUINCE.
Շատ լաւ։ Մեր թատերախաղի նիւթը մի շատ ողբերգալի կատակերգութիւն է եւ ներկայացնում է պիրամոսի ու թիսբէի սոսկալի մահը։

BOTTOM.
Օ՛, էդ մի շատ երեւելի բան կը լինի, անշուշտ, եւ մի զուարճալի բան։ հիմի, սիրելի սերկեւիլ պետրոս, խաղացողների անունները կարդայ էդ թղթի համաձայն։ Դէ, վարպետներ, շարք կազմէք իրար ետեւից։

QUINCE.
Ում անունը որ կարդամ, թող իսկոյն պատասխանի։ Նիկոլ տապան, կտաւագործ։

BOTTOM.
Էստեղ եմ։ Ասա, թէ ես ինչ դեր եմ խաղալու, յետոյ շարունակիր։

QUINCE.
Նիկ տապան, քո անուան դէմ պիրամոս է գրուած։

BOTTOM.
Պիրամոսը ի՞նչ է։ Սիրահա՞ր է, թէ՞ բռնակալ։

QUINCE.
Սիրահար է, եւ էն էլ էնպիսի մի սիրահար, որ իրեն սպանում է սիրածի համար։

BOTTOM.
Ա՛, ուրեմն էստեղ կը պահանջուի արտասուք, որ ուզածիդ պէս խաղացուի։ Եթէ ես էդ դերը խաղամ, թող ուրեմն թատրոնում նստածները իրենց թաշկինակները պատրաստ պահեն։ Էնպէս ողբամ, որ փոթորիկ բարձրանայ։ Լաւ, հիմի միւսներին անցիր։ Բայց, ճիշտն ասած, ես բռնակալի դերի համար աւելի մեծ շնորհք ունեմ։ Էրկլեսի դերը։ [Sings.]
*Les rocs en furie,*

*Avec un choc frémissant,*
*Briseront les verrous*
*Des portes des cachots;*
*Et le char de Phébus*
*Brillera de loin,*
*Et fera et défera*
*Les destins insensés*

Էդպէս է Էրկլեսի բնութիւնը, բռնակալի բնութիւնը, իսկ սիրահարը աւելի ցաւալի բան է։

QUINCE.
Ֆրանկ սրինգ, փուքսահար։

FLUTE.
Էստեղ եմ, պետրոս սերկեւիլ։

QUINCE.
Դու պէտք է թիսբեն վրեդ առնես։

FLUTE.
Թիսբեն ի՞նչ բան է, թափառական ասպե՞տ։

QUINCE.
Դա էն օրիորդն է, որին պիրամոսը պիտի սիրէր։

FLUTE.
Չէ, հոգիդ սիրես, ինձ մի ստիպիր, որ կնկա դեր խաղամ, տես, մօրուքս արդէն գալու վրայ է։

QUINCE.
Մէկ հաշիւ է. երեսիդ քող ենք քաշելու, եւ ինչքան կարող ես, բարակ ձէնով պիտի

խօսես։

BOTTOM.
Թէ երեսը ծածկելու է, թիսբեն էլ ինձ տուր։ Մի էնպիսի հրէշաւոր պստիկ ձէնով խօսեմ որ. «թիսբէ, թիսբէ», «ա՜խ, պիրամոս, իմ անգին սիրեկան, ես քո թիսբեն թանկագին եւ քո օրիորդն անգին»։

QUINCE.
Չէ՜, չէ՜, դու պիտի պիրամոսի դերը խաղաս, իսկ դու, սրինգ, թիսբեն պիտի խաղաս։

BOTTOM.
Լաւ, առաջ անցի՛ր։

QUINCE.
Ռոբին անճար, դերձակ։

STARVELING.
Էստեղ եմ, պետրոս սերկեւիլ։

QUINCE.
Ռոբին անճար, դու պիտի խաղաս պիրամոսի մօր դերը։ Թոմաս կտուց՝ պղնձագործ։

SNOUT.
Էստեղ եմ, պետրոս սերկեւիլ։

QUINCE.
Դու կը խաղաս պիրամոսի հօր դերը, իսկ ես՝ թիսբէի հօր դերը։ Մտուկ ատաղձագործ, դու պիտի առիւծի դերը խաղաս։ Յուսով եմ, բոլոր դերերը յաջող բաժանուեցին։

SNUG.
Առիւծի դերը գրած ունե՞ս։ Թէ ունես, խնդրեմ տուր ինձ՝ անգիր անեմ։ Ես շատ մոռացկոտ եմ։

QUINCE.
Դու միայն պիտի մռնչաս։ Անգիր անելու հետ գործ չունես։

BOTTOM.
Էդ առիւծի դերն էլ ինձ տուէք։ Էնպէս գոռամ, էնպէս մռնչամ, որ ձեր սրտերը փառաւորուեն՝ ինձ լսելով։ Էնպէս մռնչամ, որ դուքսը անպայման ասի. «թող մէկ էլ մռնչայ, թող նորից մռնչայ»։

QUINCE.
թէ շատ երկիւղալի մռնչաս, դքսուհին եւ պալատական տիկինները կարող են վախենալ եւ սարսափից ճչալ։ Իսկ դա բաւական է, որ մեզ ամէնքիս կախաղան հանեն։

EVERYONE.
Հա՛, հա՛, բոլորիս կը կախեն։

BOTTOM.
Հաստատ, տղերք, եթէ դուք տիկիններին վախեցնէք խելքից դուրս, նրանք, խելքները կորցրած ամէնքիս կախել կը տան։ Բայց ես էնպէս ձեւափոխեմ ձէնս, մի էնպիսի քաղցր ձէնով մռնչամ, որ կարծէք թէ աղաւնեակ եմ, էնպէս մռնչամ, որ հէնց իմանաք՝ սոխակ եմ։

QUINCE.
Հէնց դու պիրամոսի դերը պիտի խաղաս, որովհետեւ պիրամոսը անուշիկ դէմքով մի մարդ է, էնպիսի սիրուն տղամարդ, որ տօներին ճիշտ ու ճիշտ քեզ պէս է՝ շատ սիրուն, առաջնակարգ բարեկիրթ մի կտրիճ։ Ուստի ուզես թէ չուզես, դու պիտի պիրամոսին խաղաս։

BOTTOM.
Լաւ, ես էդ դերը կը վերցնեմ։ Իսկ մօրուքի խնդիրը՞։ Ին՞ձ ինչ տեսակ մօրուք է սազական էդ դերի մէջ։

QUINCE.
Ինչ մօրուք որ կամենաս։

BOTTOM.
Լաւ։ Ես էդ դերը կը խաղամ քո յարդագոյն, քո նարնջագորշագոյն կամ քո կաս-կարմիր ցորնագոյն մօրուքով։ Կամ կը հագնեմ քո ֆրանկի ոսկէ դրամագոյնի մօրուքը, քո լրիւ դեղինը։

QUINCE.
Ձեր էդ ֆրանկի գլուխներից մի քանիսը բոլորովին ճաղատ են, նրանց վրայ մազ չկայ։ Էնպէս որ, եթէ էդ գոյնի մօրուք դնես, պիտի քոսայ երեւաս։ Սրանք են, վարպետներ, ձեր դերերը։ Խնդրում եմ, աղաչում եմ եւ պարտաւորեցնում եմ ձեզ, որ մինչեւ վաղը երեկոյեան անգիր անէք ձեր դերերը եւ հանդիպէք ինձ արքունական անտառում, որ քաղաքից մի մղոն ճանապարհ է։ Էնտեղ մենք լուսնեակի լոյսով փորձ կ՝անենք, որովհետեւ եթէ քաղաքում հանդիպենք, մեր շուրջը մարդիկ կը հաւաքուեն, կը լսեն, եւ մեր գործը կը բացուի։ Մինչեւ էդ, ես կը կազմեմ ցուցակը բեմական էն պարագաների, որ պէտքական են մեր խաղի համար։ Խնդրում եմ, վարպետներ, ճիշտ ժամանակին գաք։

BOTTOM.
Անպատճառ կը գանք եւ մի լաւ փորձ էլ կ՝անենք անտառի մէջ աւելի անառակօրէն եւ անվախօրէն։

QUINCE.
Չարչարուէք, լաւ անգիր արէք ձեր դերերը։ Մնաք բարով։ Կը հանդիպենք դքսի մեծ կաղնու տակ։

BOTTOM.
Անպատճառ, թէկուզ տրաքուենք էլ, անպատճառ կը գանք։

[All exit.]

]()[

## ACT II. SCENE I.

Wood near Athens. Fairy enters at one door, Puck at another.

PUCK.
Բարեւ, փէրի, դէպի ո՞ւր ես սլանում։

FAIRY.
Հովիտներով, սարերով, թաւուտներով, փշերով-լճերով, անտառներով, կիրճերով, անցած հեղեղ ու կրակ, ես շրջում եմ ծագեծագ, լուսնից արագ, համարձակ։ Տիրուհիս է փէրիների թագուհին, ցող եմ թափում նրա կանաչ մարգերին, գարնան ծաղկունք. Եզնախոտ պէս-պէս հիւր են եկել նրա մօտ։ Տես՝ պիսակներ մէջընդմէջ մարգարիտներ ծոցի մէջ։ Դրանք չքնաղ յակինթներն են թագուհու, խունկ ու բուրմունք դրանց մէջ է նա պահում։ Գնում, ցօղի կաթիլները ժողովում, ծաղիկների բլթակներից կախ անում։ Ես գնացի։ Մնաս բարով, խենթ ռոբին, հրաշագեղ փէրիներով իր անգին հիմա կը գայ մեր սիրելի թագուհին։

PUCK.
Բայց թագաւոր Օբերոնը, իմ ընկեր, այստեղ պիտի զուարճանար այս գիշեր։ Տես, որ յանկարծ քո թագուհին մօտ չգայ եւ անզգոյշ նրա աչքին երեւայ։ Զայրացած է նրա վրայ սոսկալի, վրէժով ու բարկութեամբ է սիրտը լինի, որովհետեւ փէրիների թագուհին մի մանկլաւիկ տղայ ունի իր կողքին, հնդկաստանի թագաւորից գողացել ուշքն ու միտքը նա այդ տղին է տուել, իսկ նախանձոտ Օբերոնը անզիջում կուզի նրան ասպետ դարձնել իր խմբում, որ միասին անտառներում

թափառեն։ Բայց թագուհին սիրած տղին չի զիջում, միշտ պսակում, զարդարում է ծաղկունքով՝ արբած նրա անմարելի հրճուանքով։ Նրանք այժմ թաւուտներում անտառի եւ աստղափայլ առուակների եզերքին, եւ մարգերի դալարիքում բուրաւէտ հանդիպելիս միշտ կռւում են իրար հետ։ Նրանց կռուից փէրիները սարսափում, թաքնւում են վայրի կաղնու կճեպում։

FAIRY.

Երբ նայում եմ քո աչքերին ու կոպին, ինձ ծանօթ ես, եւ քո անունն է ռոբին։ Դո՞ւ չես միթէ չարաճճի էն ոգին, որ գիւղերում վախեցնում է կոյսերին։ Ամաններից կաթի սէրը փախցնում, միջամուխ է նրանց երկանք-աղացին, մերթ չի թողնում հանգիստ յարեն խնոցին, մերթ վնասում խմիչքների մակարդին, մութ գիշերով ծուռ է տանում ճամփորդին, իսկ ով նրան քաղցրիկ փուք է անուանում, նրան օգնում, բախտ է բերում նրա տուն։ Ասա՛, արդեօք այդ դու չե՞ս։

PUCK.

Ճիշտ ես ասում, ե՛ս եմ, ե՛ս։ Ես եմ թափառ գիշերային այդ ոգին, որ խաղերով խնդացնում է արքային զամբիի պէս, որ կերել է կուշտ գարին, խրխնջում եմ, զուարճացնում ամէնքին կամ խորոված խնձորի պէս մի թթու թաքնուելով խեղճ կնքամօր գաւաթում եւ դիպչելով նրա դողդող շուրթերին՝ գարեջուրը շուռ եմ տալիս չոր կրծքին։ Մօրաքոյրը, տխուր մի վէպ պատմելով, եռոտանի մի աթոռ ինձ կարծելով, մօտենում է՝ նստելով. ես փախչում եմ իր տակից, նա ընկնում է յատակին, «վա՜յ» է կանչում ու խեղդւում է նա հազից, ու ամէնքը թուլանում են ծիծաղից՝ միաբերան վկայելով հիացած, որ դեռ կեանքում նման հրճուանք չեն տեսած։ Բայց տես, եկաւ Օբերոնը, դուրս գնա։

FAIRY.

Եկաւ նաեւ իմ տիրուհին։ հեռանա՜նք։

[Oberon and his Train enter at one door, Titania and hers at another.]

OBERON.

Օ՛, ինչ չար բախտ է, որ Տիտանիային ես հանդիպում եմ լուսնեակի լոյսով։

TITANIA.

Ինչպէ՛ս, այն նախանձ օբերո՞նն է սա։ Թռէք, փէրիներ, հրաժարուել եմ ես օբերոնի ընկերութիւնից եւ անիծել եմ նրա մահիճը։

OBERON.

Կաց, գոռոզուհի։ Ամուսինդ չե՞մ։

TITANIA.

Ես էլ՝ քո կինը՞։ Բայց ես քաջ գիտեմ, թէ ինչպէս ծածուկ մեր կախարդական աշխարհից փախել եւ թաքնուելով կորինի տեսքով՝ դու ամբողջ օրը շուի ես փչել ու սէր յանգերգել քո սիրաբորբոք փիլիդի համար։ Ինչո՞ւ ես այստեղ։ Ինչո՞ւ ես եկել հեռու-հեռաւոր հնդկաց աշխարհի ծայրերից։ Ես այդ էլ գիտեմ. քո խրոխտաբան ամազոնուհին՝ թեթեւակօշիկ ռազմիկ սիրուհիդ, պիտի պսակուի թեսեւսի հետ, եւ դու եկել ես, որպէսզի նրանց մահիճը օրհնես, խինդ, երջանկութիւն նրանց պարգեւես։

OBERON.

Լռի՛ր, Տիտանիա, ամօ՛թ քեզ, ամօ՛թ, ինչպէ՞ս կարող ես այդպէս անպատկառ հիպոլիտէի հետ ունեցած իմ խոր յարգանքին նայել՝ քաջ գիտենալով, որ խորն ես սիրել դու թեսեւսին, եւ ինձ յայտնի է այդ սիրոյ մասին։ Դու չէիր, միթէ՞, որ մութ գիշերով նրան փախցրիր պերիգենայից, որին բռնութեամբ յափշտակել էիր։ Քո պատճառո՞վ չէր, որ նա գեղեցիկ էգլէին լքեց, լքեց արիադնին եւ անտիոպէին՝ դրժելով նրանց տուած երդումը։

TITANIA.

Դրանք քո խանդի հերիւրանքներն են։ Մեր այն ամառուայ կէսերից ի վեր չի եղել մի դէպք, որ մենք հանդիպենք սարում, անտառում, լեռնագոգի մէջ կամ մարգագետնում, կամ սալայատակ աղբիւրի կողքին, կամ եղէգնածածկ առուի

եզերքին, կամ օղակ-օղակ քամու սուլոցքի եւ երգերի տակ կաքաւել, պարել ոսկեայ ծովափին։ Որ դու, վէճերով անվերջ մէջ ընկած, արգելք չլինես մեր զուարճութեան։ հողմերը մեզ համար իզուր երգեցին, նրանք զայրացած լափել են ծովից ժանտ մառախուղներ եւ վերից թափել ցամաքի վրայ։ Նուազ գետերը, սաստիկ յորդացած, հպարտութիւնից ափերն են քանդում։ Այդ պահից ի վեր լծակն իզուր է քաշում իր լուծը, եւ խեղճ գիւղացին իզուր է քրտնում, կանաչ ցորեանը, քիստի չհասած, փտում է հողում։ Մարգագետինը, ամայի կանգնած, խեղդւում է ջրից եւ ագռաւները, ժանտախտից սատկած անասունների լեշից գիրացած, չեն կարող թռչել։ Ցեխը ծածկել է զուարթ խաղերի հրապարակը, ճանապարհների կանաչ բաւիղում անհետացել է վերջին շաւիղը՝ խոտերով ծածկուած։ Մարդիկ ձմռանը չեն ուրախանում, չի լսւում ո՛չ երգ, ո՛չ խաղ գիշերուայ ուստի լուսինը՝ ջրերի տիրուհին, զայրոյթից գունատ, օդն է լուանում եւ յօդացաւի հիւանդութիւններ սփռում ամէնուր։ Այս տարապայման խառնակութիւնից փոխուել են տարուայ եղանակները. ալեզարդ եղեամն ընկել է կարմիր վարդի ծոցի մէջ՝ զառամեալ ձմռան կզակի վրայ, եւ սառած գլխին քաղցրաբոյր ամռան թարմ կոկոնների պսակն է հանգչում իբրեւ դժնի ծաղր։ Գարուն եւ ամառ, աշունը բերրի, ձմեռը մռայլ փոխում են իրենց բնիկ տարազը, եւ աշխարհն ապշած չի կարողանում յստակ որոշել, թէ որի բերքը որինն է այժմ։ Այդ աղէտների զարմը բխում է մեր կռիւներից, մեր գժտութիւնից, դրանց ակունքն ու արմատը մենք ենք։

## OBERON.

Ինքդ կարող ես այդ ամէնն ուղղել։ Ուղղի՛ր, ուրեմն. ի՞նչ ես վշտացնում քո օբերոնին։ Խնդրածս ի՞նչ է. մի փոքրիկ մանուկ, տուր այդ որբուկին՝ ծառայ դարձնեմ ինձ։

## TITANIA.

Հանգիստ պահիր քեզ. քո ամբողջ հրաշք աշխարհը ինձ տաս, այդ երեխային ես քեզ չեմ զիջի։ Նրա մայրը ինձ ուխտակից կին էր։ Եւ նա հնդկական գրգռիչ օդում գիշերով յաճախ մասնակցում էր իմ խրախճանքներին։ Նեպտունի դեղին աւազին նստած՝ ծովն էինք դիտում՝ եկող-գնացող նաւերն հաշուելով։ ծիծաղում էինք,

երբ կրքոտ քամուց առագաստների փորը ուռչում էր. նա, իր վիճակը, կատակի տալով, նմանեցնում էր այդպիսի ուռած մի առագաստի չէ՞ որ մանուկը իր արգանդում էր, որ ճոխ թագուհին ապրանքով բեռնուած ծովային յաջող ճամփորդութիւնից վերադառնում էր իբրեւ թէ ինձ մօտ՝ դանդաղ սահելով դէպ նաւահանգիստ։ Բայց հողածին էր. երեխան ծնուեց, իսկ ինքը մեռաւ։ Այդ կնոջ սիրոյն ես խնամում եմ նրա զաւակին, այդ կնոջ սիրոյն ես չեմ բաժանուի երբեք նրանից։

## OBERON.

Երկա՞ր կը մնաս դու այս անտառում։ Մինչեւ թեսեւսի պսակն աւարտուի։ Եթէ յօժար ես դու համբերանքով, մեզ հետ պար բռնած ուրախ թռչկոտել լուսնեակի լոյսով, եկ գնանք ինձ հետ։ Եթէ յօժար չես, ուրեմն փախիր, ես էլ խոյս կը տամ, որ չտեսնեմ քեզ։ Տուր այդ տղային, եւ քեզ հետ կը գամ։

## TITANIA.

Թէկուզ քո հրաշք տէրութիւնը տաս, ես նրան չեմ տայ։ Երթանք, փէրիներ, թէ չէ անվերջ է այս հին վէճը մեր։

[Titania exits with her Entourage.]

## OBERON.

Գնա քո ճամփան։ Քեզ չի յաջողուի փախչել անտառից, մինչեւ չարաչար չպատժեմ ես քեզ այդ նախատինքի եւ ծաղրի համար։ Շուտ այստեղ եկ, փուք։ Յիշո՞ւմ ես՝ ինչպէս մի օր ծովափին, մի ժայռի նստած, ես լսում էի մի ծովահարսի, որ բարձրանալով դելֆինի մէջքին՝ այնպէս քաղցրաձայն, անուշ երգում էր։ Հնչում էր նրա քնքուշ մեղեդին, ու վայրագ ծովը, այդ երգից ազդուած, յարգանքով լռեց, իսկ աստղերն արբած, խելագարի պէս՝ ներքեւ սլացան իրենց բարձունքից, որ ծովահարսի նուագը լսեն։

## PUCK.

Այո՛, յիշում եմ։

OBERON.

Նոյն պահին տեսայ, իսկ դու չտեսար, Էրոսը զինուած թռաւ պաղ լուսնի եւ երկրի միջեւ։ Նա սլաքն ուղղեց արեւմուտքի տէր վեստեան կուսական քրմուհու վրայ եւ սիրած նետը լարուած աղեղից այնպիսի հուժկու թափով արձակեց, ասես նրանով բիւրաւոր սրտեր կարող էր խոցել։ Բայց նկատեցի, թէ ինչպէս իսկոյն նրա հրեղէն սլաքը մարեց ջրարբի լուսնի անմեղ ցոլքերում, եւ արքայական քրմապետուհին անվնաս անցաւ՝ կուսական անբիծ խոհին անձնատուր, եւ այդ սէրն յաղթեց իր վեստալական սրբութեամբ մաքուր, իսկ որտե՞ղ ընկաւ Էրոսի նետը։ Աչքովս տեսայ. նա արեւմտեան մի փոքրիկ, ճերմակ ծաղկի մէջ ընկաւ։ Այդ ծաղիկն այժմ վարդակարմիր է այդ սիրոյ վէրքից, եւ աղջիկները «խնդածաղիկ» են նրան անուանում։ Բեր այդ ծաղիկն ինձ. ես նրա տունկը քեզ ցոյց եմ տուել, այդ ծաղկի հիւթը եթէ քնածի կոպերին ընկնի, տղամարդ թէ կին, այդ միեւնոյն է, հէնց զարթնեց թէ չէ, առաջին տեսած էակի վրայ խենթի պէս իսկոյն կը սիրահարուի։ Բեր այդ տունկը ինձ։ Եւ վերադարձիր աւելի շտապ, քան լեւիաթանը լողալով կ՝անցնի մի մղոնաչափ։

PUCK.

Ինձ պէտք է միայն քառասուն վայրկեան, որ երկրագունդը ծայրեծայր անցնեմ
[Exits.]

OBERON.

Հէնց բերես թէ չէ, ես Տիտանիային կը գտնեմ քնած եւ ծաղկի հիւթը լուռ կը կաթեցնեմ նրա աչքի մէջ։ Արթնացաւ թէ չէ, առաջին տեսած էակը թէկուզ մի առիւծ լինի, արջ, գայլ կամ գոմէշ, թռվռան կապիկ կամ միջամուխ էշ, նա սիրահարուած է. խենթի պէս կ՝ընկնի նրա ետեւից։ Եւ նախքան նրա աչքը կը բուժեմ այդ կախարդանքից, որը ես կ՝անեմ մի ուրիշ բոյսով, ես մանկլաւիկին կ՝առնեմ իր ձեռքից։ Բայց ո՞վ է գալիս։ Չքանամ իսկոյն եւ ականջ դնեմ, թէ ինչ են խօսում։

[Demetrius enters with Helena following him.]

DEMETRIUS.

Ես քեզ չեմ սիրում, մի՛ հետեւիր ինձ, ո՞ւր են լիսանդրը եւ չքնաղ հերմիան։ Մէկին՝ կը սպանեմ, մէկից՝ կը սպանուեմ։ Դու ինձ ասացիր, որ նրանք ծածուկ անտառ են փախել, ահա կանգնած եմ այդ անտառի մէջ. ո՞ւր է իմ հերմիան, նրան չեմ գտնում, քիչ մնաց գժուեմ այս գիժ անտառում։ հեռացի՛ր, գնա՛, ի՞նչ ես կպել ինձ, հերիք է քարշ գաս դու իմ ետեւից։

HELENA.

Դո՛ւ ես ինձ քաշում, ով անգութ մագնիս, թէպէտ քաշածդ ոչ թէ երկաթ է, այլ պողպատից էլ հաւատարիմ սիրտ։ Քաշողը դու ես, ի՞նչ մեղք ունեմ ես, վե՛րջ տուր քո ուժին, եւ չեմ կպչի քեզ։

DEMETRIUS.

Քաշողը ե՞ս եմ. հետդ քաղցր եմ խօսել, միթէ՞ երեսիդ անվերջ չեմ ասել, որ քեզ չեմ սիրում, չեմ կարող սիրել։

HELENA.

Ինչքան վանում ես, այնքան աւելի բուռն եմ սիրում քեզ։ Ես քո շնիկն եմ, եւ դո՛ւ, դեմետրիո՛ս, ինչքան ինձ ծեծես, այնքան աւելի պիտի փարուեմ քեզ։ Դու ինձ հետ վարուիր քո որսի շան պէս, թակի՛ր, քացի՛ տուր, մի յիշիր, քշի՛ր, վանի՛ր քո մօտից, համարիր ստոր եւ քեզ անարժան, միայն թոյլ տուր ինձ՝ քո ետեւից գամ, խնդրածս ի՞նչ է, մի շատ չնչին բան, քո սրտի խորքում ինչ խորշ էլ ինձ տաս, այդ մեծ պատիւ է ինձ նման մի շան։

DEMETRIUS.

Մի փորձիր հոգուս ատելութիւնը, հիւանդանում եմ, երբ քեզ եմ տեսնում։

HELENA.

Իսկ ես հիւանդ եմ, երբ քեզ չեմ տեսնում։

DEMETRIUS.
Դու վտանգում ես քո համեստ վարկը, քաղաքը լքել, եկել ես անտառ, եւ քեզ նետում ես մէկի գրկի մէջ, որ քեզ չի սիրում՝ անբիծ կուսութեան քո անգին գանձը ապաւինելով խաւար գիշերուայ իրապուրանքին եւ այս հանդարտիկ, ամայի վայրի չար ներշնչանքին։

HELENA.
իմ պաշտպանը քո ազնուութիւնն է։ Գիշերը լոյս է, երբ տեսնում եմ քեզ, ես լոյսի մէջ եմ, եւ չկայ գիշեր, ոչ էլ ամայի մի անտառ է սա, դու իմ կողքին ես, ուրեմն ամբողջ աշխարհն այստեղ է, ինչպէ՞ս կարող եմ մենակ համարուել ես այս անտառում, երբ աշխարհն համայն այժմ ինձ է նայում։

DEMETRIUS.
Իսկ ես ծառերի խորքը կը փախչեմ՝ քեզ գազանների կամքին թողնելով։

HELENA.
Ոչ մի բիրտ գազան այդչափ անգութ չէ։ Ի՞նչ արած, փախիր։ Թող առասպելը փոխուի հիմնովին։ Ֆեբոսը սուրայ եւ դափնէն ընկնի նրա ետեւից, անզօր աղաւնին արծուին հալածի, այծեամը վագրի վրայ յարձակուի։ հետապնդելը անմիտ է դառնում, երբ որ ուժեղն է անզօրից փախչում։

DEMETRIUS.
Չեմ ուզում լսել, բաւ է, թող գնամ, իսկ եթէ դարձեալ իմ ետեւից գաս, ես քեզ անտառում պիտի վշտացնեմ, հաստատ իմացիր։

HELENA.
Ա՛խ, դու տաճարում, քաղաքում, դաշտում, ամէն տեղ անվերջ վշտացնում ես ինձ։ Ամօ՛թ, ամօ՛թ քեզ։ Դու քո վարմունքով վիրաւորում ես կանացի սեռը։ Մենք չենք ստեղծուած սէր թախանձելու կամ սէր որսալու տղամարդկանց պէս, մենք ստեղծուած ենք, որ տղամարդիկ սիրեն, ընտրեն մեզ։ Գնում է դեմետրիոսը։ Չեմ պոկուի քեզնից, որ իմ դժոխքը դրախտ դարձնեմ եւ իմ սիրածի գրկի մէջ մեռնեմ։

[Exits.]

OBERON.
Հանգիստ գնա, ով կոյս։ Նախքան դուրս կը գայ նա այս անտառից, վիճակդ կը լինի հիմնովին փոխուած, դու պիտի փախչես, նա պիտի վազի՝ քեզանով արբած։

[Puck enters.]

OBERON [cont.]
Բարեւ, թափառիկ։ Ծաղիկը գտա՞ր։

PUCK.
Ահա՛, բերեցի։

OBERON.
Տո՛ւր ինձ, խնդրում եմ։ Մի գետափ գիտեմ, ուր վայրի ուրցն է բուրմունք տարածում, ուր եզնախոտն ու մանուշակն են աճում, շեփորածաղիկ՝ այծէ թփերով, մշկավարդերով, վայրի վարդերով ճոխ կամար հիւսած այդ հովանու տակ Տիտանիան է երբեմն հանգչում գիշերով՝ այդ ծաղկունքի մէջ մեղմիկ ննջելով։ Այդտեղ է օձը իր ճաճանչափայլ շապիկը փոխում, եւ այդ շապկի մէջ փիւնկ է քնում։ Այս հիւթից մի քիչ նրա աչքերին ես կը կաթեցնեմ, որ նրա գլխում բիւր ատելութեան ցնորք զարթնեցնեմ։ Մի մասն էլ դու առ եւ մտիր անտառ. մի աթենացի օրիորդ դեռատի սիրահարուած է մի ամբարտաւան երիտասարդի։ Ինչքան կպչում է, տղան փախչում է եւ նրա սէրը անվերջ մերժում է։ Նա թափառում է հէնց այս անտառում։ Որոնի՛ր, գտիր դու այդ պատանուն եւ նրա աչքին այդ հիւթը քամիր։ Բայց այնպէս արա, խօսքս լաւ լսիր, որ երբ կոպերը բանայ պատանին, նա իր աչքի դէմ տեսնի օրիորդին։ Տղան այստեղ է եկել աթէնքից, հեշտ կը ճանաչես նրան հագուստից։ Դու գործն այնպէս տար, որ տղան գժուի աղջկայ համար եւ աւելի թունդ համակուի սիրով, քան խեղճ օրիորդն է արբած իրենով։ Ես քեզ կը սպասեմ աքլորից առաջ։

PUCK.
անհոգ կաց, տէ՛ր իմ, այդ գործն համարիր լրիւ կատարուած: [Exits.]

][][

## ACT II. SCENE II.
Another part of the wood. Titania with her Train enter.

TITANIA.
Դէ, շուրջպար բռնէք, պարէ՛ք, երգեցէ՛ք, երրորդ վայրկեանում իսկոյն ցրուեցէ՛ք: Թող ոմանք վարդերը մաքրեն թրթուրից, ոմանք մարտնչեն չղջիկների հետ, նրանց թեւերից թիկնոցներ շինեն իմ փոքրիկ տկլոր էլֆերի համար: Ոմանք թող բուին քշեն այստեղից, որ ամբողջ գիշեր բւուում է, ճչում եւ ապուշ կտրած՝ նայում մեզ վրայ: Նախ ինձ անուշիկ երգով օրօրէք, յետոյ շտապով ձեր գործին անցէք, ննջել եմ ուզում:

FIRST FAIRY.
[Singing.] Թունոտ օձեր երկլեզուակ, իսկոյն ցրուէք, թաք կացէք, ոզնի, մողէս ու մոծակ, մեր թագուհուց հեռացէք:

CHORUS.
Սոխակ, ձայնով քո քաղցրիկ երգիր մեզ հետ դու նանիկ, օրօր, օրօր անուշիկ, օրօր, օրօր անուշիկ: Թող ոչ մի չարք, դիւթանք, հմայք, չվրդովի թագուհուն. բարի գիշեր, անուշ քուն:

SECOND FAIRY.
Ո՛վ դու, նենգ սարդ, չգաս մօտ, վերջ ճռռոցիդ, խենթ ճպուռ, քաշուէք, մամուկ երկարոտ, բզէզ, խխունջ, սեւ թրթուր:

CHORUS.
Սոխակ, ձայնով քո քաղցրիկ երգիր մեզ հետ դու նանիկ, օրօր, օրօր, անուշիկ:

Օրօր, օրօր անուշիկ։

FIRST FAIRY.
Կարգի եկաւ ամէն բան, մէկին թողնենք պահապան, իսկ մենք թռչենք, հեռանանք։

[As the Fairies exit Titania lays down to sleep. Soon Oberon enters and squeezes magic flower-juice in Titania's closed eyelids.]

OBERON.
Աչքդ բացիր. ինչ տեսնես, սիրահարուես խենթի պէս, նրան սիրես, կարօտես, ինչ էլ տեսնես քո առաջ՝ կատու, յովազ, գայլ կամ արջ, ինչ անճոռնի կենդանի, քո սիրածը նա լինի։ հիմա հանգիստ դու ննջիր, հէնց որ եկաւ, արթնացիր։

[As Oberon exits Lysander and Hermia enter.]

LYSANDER.
Դու շատ յոգնեցիր, սէր իմ, անտառում, ես էլ, ճիշտն ասած, ճամփան կորցրի։
Չհանգչե՞նք այստեղ, յարմար չե՞ս կարծում, մինչ մխիթարիչ օրուայ լոյս բացուի։

HERMIA.
Հանգչենք, լիսանդր։ Գտիր քեզ համար յարմար անկողին, իսկ ես կը պառկեմ այս մամռոտ կողին։

LYSANDER.
Թող այդ խոտը մեզ բարձ դառնայ անձուկ մի սիրտ, մի հաւատ, մի մահիճ, մի զոյգ։

HERMIA.
Ո՛չ, իմ լիսանդր, խնդրանքս յարգիր, քիչ հեռու մնա, կողքիս մի պառկիր։

LYSANDER.
Իմ անմեղ խօսքը մի դարձրու խրթին, թող սէրը թարգման լինի իմ սրտին։ Մեր

սրտերն այնպէս սերտ են միացած, կարծես երկուսով մի սիրտ ենք դարձած։ Մենք շաղկապուած ենք միեւնոյն ուխտով, մի անխախտ սիրով եւ մի հաւատով, ուստի մի մերժիր կողքիդ պառկելու, նոյնիսկ այդքան մօտ պառկելով կողքիդ՝ ես քեզ չեմ խաբի, հերմիա, իմ անգին։

HERMIA.
Բառախաղի մէջ դու շատ հմուտ ես, իմ պատիւը խիստ կ՝անարգէի ես, եթէ խաբեբայ համարէի քեզ։ Եղիր բարեկիրթ, իմ սէրը յարգիր, մի մօտենա ինձ եւ հեռու պառկիր։ Միշտ համեստ կոյսն ու պարկեշտ պատանին զգաստ կը մնան այսպիսի պահին, այդպէս է յարգուած կարգը մարդկային։ Արդ, հեռու պառկիր, եւ գիշեր բարի, սէրդ թող երբեք չփոխուի, անգին, մինչեւ վախճանը քո քաղցրիկ կեանքի։

LYSANDER.
Ամէն, Օ՜, ամէն, այդ մաղթանքիդ հեզ, թող մեռնեմ, եթէ դաւաճանեմ քեզ։ Ահա մահիճս։ Քեզ՝ կազդուրիչ քուն։

HERMIA.
Փափագիդ կէսը քեզ եմ փափագում։

[As they fall asleep Puck enters.]

PUCK.
Անտառն ամբողջ ման եկայ, աթենացուն չգտայ, որ ծաղկի հիւթն առնէի, նրա աչքին քամէի։ Գիշեր է եւ լռութիւն։ Ով է այնտեղ։ Ո՞վ է, ո՞վ՝ աթենացու թիկնոցով։ Նա է այդ շուն-շանորդին, որ մերժում է օրիորդին, իմ տէրն այդպէս ինձ ասաց, կոյսն էլ այնտեղ է պառկած, խոնաւ գետնին կուչ եկած, թշուառ աղջիկ մերժուած։ Այդ բիրտ, անտաշ անհոգին նոյնիսկ խեղճին չի թողել, որ գայ, պառկի իր կողքին։ Դիւթիչ ծաղիկն այս ճմլեմ, քո կոպերին կաթեցնեմ, որ երբ զարթնես դու քնից, սիրոյ անհուն կարօտից քունը փախչի քո աչքից։ Քո ժամն եկաւ, պատանի։ Իսկ ես այստեղ չսպասեմ, օբերոնի մօտ վազեմ։

[As Puck exits Demetrius and Helena enter, running.]

HELENA.
Օ՛, կաց, դեմետրիոս, ինձ սպանեցիր։

DEMETRIUS.
Գնա՛, չեմ ուզում, հոգիս հանեցիր։

HELENA.
Եւ թողնում ես մենակ ինձ մութի մէջ այսպէ՞ս։ Օ՛, խնայիր ինձ։

DEMETRIUS.
Գնա, ասում եմ, չեմ սիրում ես քեզ։ Փախչում է։ [Exits.]

HELENA.
Շնչասպառ դարձայ այս մոլի որսից, ինչքան խնդրում եմ, այնքան ատում է ինձ։ Երջանիկ հերմիա, բախտիդ եմ խանդում, ի՛նչ հրապուրիչ աչքեր ունես դու։ Ինչի՞ց աչքերիդ պայծառը շատ է, միթէ՞ արցունքից, բայց իմ արցունքը քոնից առատ է եւ լուանում է աչքերս յաճախ, ինչո՞ւ այդ փայլից ես զուրկ եմ, աւա՛ղ։ Ո՛չ, ես այլանդակ մի արջ եմ, գիտեմ, եւ գազանները ինձ հանդիպելիս վախից փախչում են։ Ուստի չպէտք է ապշել զարմանքից, որ դեմետրիոսն էլ, երբ տեսնում է ինձ, այդպէս փախչում է, ինչպէս հրէշից։ Կեղծ, չար հայելի, ապակի դու խենթ, եւ թոյլ տուեցիր, որ ես անհեթեթ տեսքս բաղդատեմ հերմիայի չքնաղ աչք ու ունքի հետ։ Բայց ո՞վ է այստեղ։ Լիսանդրը՞՝ պառկած պաղ գետնի վրայ, քնա՞ծ, թէ՞ մեռած։ Ես վէրք չեմ տեսնում, արեան հետք չկայ։ վե՛ր կաց, լիսանդր, եթէ ողջ ես դու, զարթնիր, աչքդ բաց։

LYSANDER.
[Waking up.] Պատրաստ եմ նետուել կրակների մէջ՝ քո սիրով արբած։ Օ՛, ջինջ հեղինէ, թափանցիկ, շիտակ, մի ազնիւ սիրտ եմ տեսնում կրծքիդ տակ։

Դեմետրիոսն ո՞ւր է, որ փռեմ լեշը, իմ սրով առնեմ ես քո վրէժը։

HELENA.

Ո՜չ, ո՜չ, լիսանդր, քեզ հանգիստ պահիր, ին՜չ փոյթ, թող սիրի նա քո հերմիային, բայց չէ՞ որ հերմիան քեզնով է արբած, կարեւորն այդ է, ուստի հանգիստ կաց։

LYSANDER.

Հանգի՞ստ։ Զղջում եմ իմ անդարձ կորած ժամերի համար՝ ձանձրալի, տխուր, որ հերմիայի հետ վատնեցի իզուր։ Ո՜չ, ո՜չ թէ հերմիան, այլ հեղինէն է իմ սիրածն անգին, աղաւնու հետ ո՞վ չի փոխի ագռաւին։ Չէ՞ որ մեր միտքն է վարիչը կամքի, իսկ միտքն ասում է՝ չկայ քեզ պէս կին։ ժամանակից շուտ չի հասնում միրգը, փոքր էր իմ միտքը եւ իմ տարիքը։ Այժմ ես մեծ եմ պայծառ հասակիս, եւ միտքն է դարձել իշխանը կամքիս։ Այդ միտքն ասում է, որ քո աչքերում՝ այդ սիրոյ գրքում ամենափարթամ, լուսեղէն սիրոյ հեքիաթը կարդամ։

HELENA.

Միթէ՞ ծնուել եմ, որ դատապարտուեմ այդ սուր հեգնանքին, ինչո՞ւ համար ինձ թիրախ ընտրեցիր այդ նախատինքին, միթէ՞ հերիք չէ, միթէ՞ հերիք չէ, ո՜վ իմ թանկագին, որ չարժանացայ ես դեմետրիոսի քաղցրիկ նայուածքին։ Չկարողացայ մի ժպիտ կորզել ես նրա աչքից, դրա՞ համար ես անխիղճ ծաղրում ինձ։ Եւ այդ ի՞նչ ձեւ է, սիրելու համար։ Միթէ՞ վայել է, պարոն սիրահար, ինձ այդպէս խոցել, հեգնել չարաչար։ Մնացէ՜ք բարով։ Բայց պիտի ասեմ, գէթ այդ մի հարցում ես քեզ շատ ազնիւ մարդ էի կարծում։ Ին՜չ ծանր բան է, երբ մէկից մերժւում, միւսի ձեռքին ծաղրանք ես դառնում։ [Exits.]

LYSANDER.

[Does not see Hermia.] Օ՜, քնիր, հերմիա, մենակ պառկեցիր, մենակ էլ մնա, լիսանդրին այլեւս դու չես մօտենայ։ Սաստիկ զեխութեան վերջը զզուանք է։ Կամ ինչպէս մոլի մի աղանդապաշտ վերջում դառնում է սոսկալի անհաշտ այդ նոյն աղանդին, ճիշտ այդպէս էլ դու զեխ հափրանք եղար ինձ համար կեանքում, մի կոյր հաւատամք. թող ամէնքը քեզ անիծեն, ատեն, իմ սէրը այժմ ես հեղինէին

պիտի նուիրեմ. լոկ նրան պաշտեմ, նրա անձնուէր ասպետը լինեմ։ [Exits.]

HERMIA.

[Waking up.] Օգնի՛ր, լիսանդր, հասի՛ր, օգնի՛ր ինձ, պոկիր գալարուող այս օձն իմ կրծքից։ վա՛յ ինձ, լիսանդր, ա՛խ, գթա՛, գթա՛, այս ի՞նչ սոսկալի երազ ես տեսայ, նայիր, ինչպէս եմ դողում սարսափից։ Երազում մի օձ իմ սիրտն էր ուտում, դու, անհոգ նստած, ժպտում էիր, դիտում։ Լիսանդր, ինչպէս տեղը փոխել է։ Ո՞ւր ես, իմ պաշտպան։ Չի՞ լսում։ Գնա՞ց։ Ոչ շշո՞ւկ, ոչ ձայն։ Աւա՜ղ, որտե՞ղ ես, պատասխան տուր ինձ, լեղաճաք եղայ անտառում վախից։ Արձագանք չկա՞յ։ Ելնեմ ուրեմն ես քեզ փնտրելու, կամ քեզ, կամ մահս իսկոյն գտնելու։ [Exits.]

][][

## ACT III. SCENE I.

The Wood. Titania is still asleep. Bottom, Quince, Snout, Starveling, Snug and Flute all enter.

BOTTOM.

Մեր ամբողջ խումբը էստե՞ղ է։

QUINCE.

Հա՛, հա՛, ամէնքս էլ էստեղ ենք։ Սա շատ սքանչելի, յարմարաւոր տեղ է մեր փորձի համար։ Էս կանաչ բացատը կը լինի մեր բեմը, իսկ էս ալոճենու պուրակը՝ մեր զարդասենեակը, եւ մենք էնպէս պիտի խաղանք, հէնց իմանաս, թէ դուքսը նստած մեզ է նայում։

BOTTOM.

Պետրոս սերկեւիլ։

QUINCE.

Ի՞նչ կայ, տապան։

BOTTOM.
«Պիրամոսի եւ թիսբէի»։ Էս կատակերգութեան մէջ էնպիսի բաներ կան, որ ոչ մէկին դուր չեն գայ։ Առաջին. պիրամոսը թուրը պիտի քաշի, որ իրեն սպանի, իսկ տիկինները դրանից կը սարսափեն, կը ճչան։ իը, ի՞նչ կ՝ասես։

SNOUT.
Ճիշտ է, վտանգաւոր բան է։

STARVELING.
Իմ կարծիքով՝ մենք պէտք է էդ սպանութիւնը մէջտեղից հանենք, մինչեւ ամէն բան պրծնի։

BOTTOM.
Չէ, հանել պէտք չէ։ Ես մի էնպիսի ճարպիկ բան եմ մտածել, որ ամէն ինչ շատ յաջող գլուխ կը գայ։ Դուք ինձ համար մի նախերգանք գրեցէք։ Էդ նախերգանքը թող հասկացնի թատրոնում նստածներին, որ մեր թրերը ոչ ոքի վնաս հասցնել չեն կարող, որ պիրամոսը իրեն իսկապէս չի սպանում, եւ որպէսզի նրանք լրիւ հանգստանան, պիրամոսը թող ասի, որ ես՝ պիրամոսս, իսկական պիրամոսը չեմ, այլ կտաւագործ տապանն եմ։ Էդ բանը նրանց վախը բոլորովին կը ցրի։

QUINCE.
Շատ լաւ, մենք կը պատուիրենք էնպիսի մի նախերգանք, կը կարգադրենք, որ գրուի ութ եւ վեց վանկանի ոտանաւորով։

BOTTOM.
Երկու վանկ էլ աւելացրէք, թող ութ-ութ դառնայ։

SNOUT.
Իսկ առիւծը՞։ Տիկինները չե՞ն վախենայ առիւծից։

STARVELING.
Ճիշտ է, էդ բանը իմ մտքով էլ անցաւ։

BOTTOM.
Վարպետներ, էդ մասին հարկաւոր է լաւ մտածել։ Կանանց մէջ առիւծ դուրս բերել. աստուած հեռու տանի, գիտէ՞ք, թէ դա ինչ սարսափելի բան է։ Իմացած եղէք, վայրի բադի որսը էնքան երկիւղալի չէ, որքան առիւծինը, էն էլ՝ կենդանի առիւծը։ Էնպէս որ մենք պէտք է էդ բանը աչքաթող չանենք։

SNOUT.
Ուրեմն թող մէկ ուրիշ առաջաբան էլ բացատրի, որ էդ առիւծը իսկական առիւծ չի։

BOTTOM.
Չեղա՜ւ։ Դու անպայման խաղացողի անունը պիտի ասես, եւ նրա երեսի կէսն էլ առիւծի վզի միջով պէտք է տեսանելի դառնայ թատրոնում նստածներին։ Խաղացողը ինքն էլ առիւծի մորթու միջից թող էսպէս ճառախօսի կամ սրա նման մի բան. «տիկնա՜յք» կամ «նազելի տիկնա՜յք, ես կը կամենայի ձեզ ասել» կամ «ես կը կամենայի խնդրել ձեզ» եւ կամ թէ «ես կը կամենայի աղաչել ձեզ, որ չվախենաք եւ չդողաք, ձեր կեանքին մատաղ։ Եթէ կարծում էք, որ ես իսկական առիւծ եմ եւ ընկել եմ ձեր մէջ, վայ ինձ։ Ո՜չ, ես իսկական առիւծ չեմ։ Ես էլ ձեզ պէս մի մարդ եմ»։ Յետոյ թող խաղացողը իր անունն ասի. ուղղակի ասի, որ առիւծի դեր խաղացողը ատաղձագործ մտուկն է։

QUINCE.
Լաւ, էդպէս էլ կ՝անենք։ Բայց երկու դժուար բան էլ կայ։ Ինչպէ՞ս անենք, որ լուսնեակի լոյսը սենեակ մտնի։ Չէ՞ որ, ինչպէս գիտէք, պիրամոսը եւ թիսբեն իրար հանդիպում են լուսնեակի լոյսով։

SNOUT.
Իսկ մեր խաղացած գիշերը լուսնեակ լինելո՞ւ է, թէ՞ ոչ։

BOTTOM.
Շուտ մի օրացոյց, մի օրացոյց բերէք։ Տեսէք՝ ինչ է ասում եփրեմուերդին։ Լուսնեակի տեղը գտէք, լուսնեակի տեղը։

QUINCE.
Հա՛, էդ գիշեր լուսնեակ կայ։

BOTTOM.
Դէ, ուրեմն մնացեալը հեշտ է։ Մեր խաղալու սենեակի մեծ պահարանը կիսով չափ բաց կը թողնենք եւ լուսնեակի լոյսը ներս կը մտնի։

QUINCE.
Պրծաւ գնաց։ Կարող ենք եւ էսպիսի բան անել։ Որեւէ մէկը պէտք է ներս մտնի՝ ձեռքին փշոտ մի ճիւղք եւ մի լապտեր բռնած եւ բացատրի, որ ինքը եկել է անձնաւորելու կամ ներկայացնելու լուսնեակի լոյսը։ Բայց էդտեղ մի բան էլ կայ. էդ մեծ սենեակում մեզ մի պատ է հարկաւոր, որովհետեւ պիրամոսը եւ թիսբեն, ինչպէս պատմութիւնն է ասում, իրար հետ խօսել են պատի ճեղքի միջով։

SNOUT.
Դուք պատը դռնից ներս չէք մտցնի, էդ անկարելի բան է։ Ի՞նչ կ՝ասես, տապան։

BOTTOM.
Մեր միջից դարձեալ մէկը պէտք է իրեն պատ ձեւացնի։ Մենք նրա վրայ մի քիչ գաջ կը ծեփենք, կաւ կամ կիր կը քսենք, որ ցոյց տայ, թէ էդ մարդը պատ է։ Ձեռքի մատներն էլ թող էսպէս իրարից հեռու պահի, որ նրանց արանքից պիրամոսն ու թիսբեն շշուկով սիրաբանեն իրար հետ։

QUINCE.
Թէ էդ էլ եղաւ, ուրեմն ամէն բան կարգին է։ հիմի նստեցէք, եւ թող ամէն մարդ իր դերը փորձի։ Պիրամոս, առաջ դու սկսիր։ հէնց որ խօսքդ վերջացրիր, կը մտնես էս թփուտը։ Էդպէս էլ ամէն խաղացող՝ համաձայն իր վերջին խօսքի։

PUCK.

[Entering unseen.] Այս ովքե՞ր են աղմկում մեր թագուհու մահճին մօտ, ին՜չ կոշտ, կոպիտ ժողովուրդ։ ՕհՕ՜, թատրոն են խաղում։ Եկ, ունկնդիր դարձնեմ ինձ եւ կամ նոյնիսկ՝ մասնակից։

QUINCE.

Խօսիր, պիրամոս։ Թիսբէ, պատրաստ կաց։

BOTTOM.

Թիսբէ, ջինջ ծաղկանց ծաղիկ հոտաւէտ

QUINCE.

Հոտաւէ՜տ, հոտաւէ՜տ։

BOTTOM.

Ծաղիկ հոտաւէտ, անոյշ է շունչդ, թիսբէ, գին, անգին, բայց էս ի՞նչ ձայն է։ Մի քիչ էստեղ կաց, ես հիմա կը գամ, իմ անգին սիրած։ [Exits.]

PUCK.

Նման պիրամոս կեանքում չեմ տեսած։ [Exits.]

FLUTE.

Հիմա ե՞ս պիտի խօսեմ։

QUINCE.

Հա՜, խօսքը քոնն է։ Որովհետեւ, լաւ իմացիր, նա գնաց տեսնելու, թէ էդ ինչ աղմուկ է եւ շուտով ետ պիտի գայ։

FLUTE.

*«Լուսափայլ պիրամոս, սպիտակ, քանց շուշան, յաղթական, ուստի վարդից*

*վարդագոյն, պատանեակ առոյգ, այր անզուգական, ազնիւ, անխարդախ նժոյգ աննկուն, ես քեզ կը սպասեմ Նինոյի շիրմին»:*

QUINCE.
*«Նինոյի շիրմի՛Ն»*: Բայց էդ խօսքը դու հիմա չպիտի ասես: Էդ քո պատասխանն է պիրամոսին, իսկ դու միանգամից դուրս ես տալիս քո ամբողջ ասելիքը, ամբողջ դերը: Պիրամոսը ներս է մտնում, իսկ դու քո վերջին խօսքը ասել-պրծել ես: Լաւ, մէկ էլ ասա՝ *«Նժոյգ աննկուն»"*

FLUTE.
Օ՜, *«Ազնիւ, անխարդախ նժոյգ աննկուն»:*

[Puck enters leading Bottom, who know has an ass' head.]

BOTTOM.
*«Ես քոնն եմ, թիսբէ, թէկուզ լինէի բոլորից սիրուն»:*

QUINCE.
Օ՜, սոսկում, հրաշք: Էս ի՞նչ զարմանք, մենք կախարդուած ենք, աղօթենք, վարպետներ, փախչենք, վարպետներ, էհէ՜յ, օգնութի՜ւն:

[Everyone flees except Puck and Bottom.]

PUCK.
Ուր էլ փախչէք, իմացէք, ես ձեզ պիտի հալածեմ, քշեմ դաշտով, անտառով, տատասկներով, մացառով, մերթ մի նժոյգ դառնալով, մերթ որսի շուն աներկիւղ եւ մերթ մի գայլ անգլուխ, մերթ վայրի խոզ, մերթ կրակ, պիտ խրխնջամ շարունակ, հաչեմ, գոռամ բարկանամ, մի ձի, մի շուն, արջ ու խոզ, կրակ ու բոց ձեւանամ: [Exits.]

BOTTOM.
Ինչո՞ւ են նրանք փախչում։ Գիտեմ, նրանք էդ խորամանկութեամբ ուզում են ինձ վախեցնել։

SNOUT.
[Entering.] Օ՛, տապան, դու այլափոխուած ես։ Էդ ի՞նչ եմ տեսնում վրադ։ [Exits.]

BOTTOM.
Ի՞նչ պիտի տեսնես. դու մենակ քո իշու գլուխն ես տեսնում, ուրիշ ի՞նչ պիտի տեսնես։

QUINCE.
[Entering.] Աստուած փրկի քեզ, տապան, աստուած փրկի քեզ։ Դու կենդանակերպուած, վերափոխուած ես կենդանու։ [Exits.]

BOTTOM.
Ես դրանց անզգամութիւնը լաւ եմ տեսնում։ Նրանք ինձ իշու տեղ են դրել, ուզում են վախեցնել ինձ, եթէ ձեռքներիցը գայ։ Բայց ես իմ տեղից չեմ շարժուի, տեսնենք ինչ կարող են անել։ Էստեղ ետ ու առաջ ման կը գամ ու երգեր կ՝ասեմ, թող լսեն ու տեսնեն, որ վախեցողը չեմ։ [Sings.]
*Le merle au noir plumage,*
*Au bec jaune comme l'orange,*
*La grive avec son chant si gai,*
*Le roitelet avec sa petite plume.*

TITANIA.
[Waking.] Ի՞նչ հրեշտակ է արթնացնում ինձ իմ ծաղկաւէտ անկողնուց։

BOTTOM.
[Sings.] *Le pinson, le moineau et l'alouette,*
*Le gris coucou avec son plain-chant,*

*Dont maint homme remarque la note,*
*Sans oser lui répondre non.*
իսկապէս, ո՞վ գլուխ ունի էդ յիմար թռչնի հետ վիճելու։ Ո՞ւմ բանն է նրա սուտը բռնել, թէկուզ շարունակ «*կկու*» կանչի։

TITANIA.
Օ՛, դարձեալ երգիր, ազնիւ հողածին, աղաչում եմ քեզ, ականջս գերուեց քո անուշ ձայնով, իմ աչքը՝ չքնաղ քո կերպարանքով, քո առաքինի վարքը ինձ յուզեց, հէնց տեսայ թէ չէ, սիրտս քեզ սիրեց։

BOTTOM.
Իմ կարծիքով, տիկին, դուք շատ քիչ պատճառ ունէք ինձ սիրելու. ճիշտն ասած՝ խելքն ու սէրը իրար հետ էնքան էլ համերաշխ չեն մեր օրերում։ Ցաւալի է, որ նոյնիսկ մի բարի հարեւան չկայ, որ հետը ուրախանաս։ Տեսնո՞ւմ ես, ինչ լաւ ասացի։

TITANIA.
Խելքով ու տեսքով դու աննման ես։

BOTTOM.
Ճիշտ չի։ Եթէ ես էնքան խելք ունենայի, որ կարողանայի դուրս գալ էս անտառից, էդքան խելքը ինձ բաւական էր։

TITANIA.
Անտառից դուրս գալու փափագ չունենաս, դու ուզես-չուզես, այստեղ կը մնաս։ Ես փէրիների թագուհին եմ պերճ, իմ երկրում չքնաղ ամառ է անվերջ, ես քեզ սիրում եմ, ինձ հետ պիտի գաս, դու անթիւ փէրի ծառայ կ՝ունենաս։ Նրանք ծովից քեզ գոհար կը բերեն, ծաղկանց մէջ նինջդ երգով կ՝օրօրեն։ Դեղով կը մաքրեն քայլքդ հողեղէն, որ թեթեւ ճախրես, դառնաս օդեղէն։ Լոբենծիլ, ցեցիկ, մանանեխի կուտ, սարդաբուն, դէ շուտ։

[Four Fairies enter.]

PEASEBLOSSOM.
Այստեղ եմ։

COBWEB.
Ես էլ։

MOTH.
Ես էլ։

MUSTARDSEED.
Ես էլ։

ALL FOUR.
Ո՞ր կողմը թռչենք։

TITANIA.
Այս պարոնի հետ բարի վարուեցէք օդային պարով նրան պատուեցէք, տուէ՛ք, թո՛ղ ուտի սեւ մորի, ծիրան, կարմիր խաղողով սնեցէք նրան, եւ կանաչ թզով ու ճերմակ թթով, եւ խոնարի մեղուից յափշտակած մեղրով, մեղուի մոմապատ տոտիկներն առէք, լուսատտիկի կայծերով վառէք եւ մահիճ տարէք նրան այդ իրով, որ քնի-զարթնի միշտ այդ լապտերով։ Թիթեռնիկի վառ թեւերը պոկէք եւ լուսնի կողմից աչքերին պահէք, որ լուսնի շողը չդիպչի վրան, այժմ խոնարհուէք, ողջունէք նրան։

PEASEBLOSSOM.
Ողջո՛յն, հողածի՛ն։

COBWEB.
Ողջո՛յն քե՛զ։

MOTH.
Ողջո՜յն։

MUSTARDSEED.
Յարգալիր ողջոյն։

BOTTOM.
Սրտանց շնորհակալ եմ ձեր ողջոյնի համար։ Կարելի՞ է իմանալ ձեր հրամանոց անունը։

COBWEB.
Սարդաբուն։

BOTTOM.
Կը փափագէի ձեզ հետ աւելի մօտիկ ծանօթանալ, պարոն սարդաբուն։ Եթէ իմ մատը կտրեմ, օգնութեան համար անպայման ձեզ կը դիմեմ։ - ձեր անունը՞, պատուական պարո՛ն։

PEASEBLOSSOM.
Լոբեծիլ։

BOTTOM.
Խնդրում եմ իմ սիրալիր բարեւը մատուցէք տիկին փեճեկին՝ ձեր մօրը, եւ պարոն կճեպին՝ ձեր հօրը։ Սիրելի պարոն լոբեծիլ, կը փափագէի ձեզ հետ էլ մօտիկից ծանօթանալ։- խնդրեմ ձեր անունը՞, պարո՛ն։

MUSTARDSEED.
Մանանեխի կուտ։

BOTTOM.
Պարոն մանանեխ, ես ձեր համբերութեանը քաջ ծանօթ եմ։ Էն անիրաւ եզան մսի խաշլամեն ձեր տնեցիներից շատերին արդէն կուլ է տուել։ հաւատացէք, քանի-քանի անգամ աչքերս ջրոտուել են ձեր պատուելի ազգականների համար։ Ես կը փափագէի ձեզ հետ աւելի մօտիկ ծանօթանալ, պարոն մանանեխի կուտ։

TITANIA.
Նրան ծաղկազարդ մահիճս տարէք, լուսինը լալիս է ասես երկնքում, երբ նա լալիս է, ծաղկունքն է տխրում՝ ողբալով լլկուած մի սուրբ մաքրութիւն։ Իմ սիրեցեալի բերանը կապէք, եւ իմ ետեւից լռութեամբ բերէք։ [Exits.]

][][

ACT III. SCENE II.
Another part of the Woods. Oberon enters.

OBERON.
Կ՝ուզեմ իմանալ, Տիտանիան զարթնե՞ց։ Ի՞նչ տեսակ էակ երեւաց աչքին, ի՞նչ բանի վրայ նա սիրահարուեց։ Բանբերս եկաւ։

[Puck enters.]

OBERON [cont.]
Ասա՛, խենթ ոգի, մեր գիշերային կախարդ անտառում ի՞նչ է պատահել, արկած ինչպիսի՞։

PUCK.
Իմ տիրուհին սիրահարուեց ուրիշի։ Իր սրբազան ննջարանին շատ մօտիկ, երբ նա պառկած քուն էր մտած երջանիկ, արհեստաւոր մի խումբ մարդիկ՝ կոշտ, մրոտ, որ աթէնքում օրուայ հացի են կարօտ, եկել էին մի հին պիես փորձելու, մտադրուած՝ այդ թատրոնը խաղալու թեսեւսի հարսանեկան հանդէսին։

Ամենաբութն այդ խմբի մէջ խելագար, որ, իր խելքով, պիրամոսին պիտ խաղար, բեմը թողած, մտաւ թփուտը խաւար։ Ես դրանից վայրկենապէս օգտուեցի, նրա գլխին իշու գլուխ տնկեցի։ Պատասխանի հերթը հասաւ թիսբէին. իմ էշն եկաւ ցցուեց նրանց առաջին։ հէնց որ տեսան, սագերի պէս կատաղի, հազիւ առած զգոյշ քայլը որսորդի, կամ ինչպէս սեւ ագռաւները երամով հրացանի յանկարծակի պայթիւնով վեր թռչելով, կռնչալով՝ տրոհուում, կատաղօրէն դէպի երկինք են սուրում, նրա տեսքից ամէնքն այդպէս պո՛ւկ փախան։ Մէկն աթէնքից մարդ էր կանչում օգնութեան սպանեցի՜ն, շուտ հասէք։ Մէկը գետին գլորուեց, նորից ելաւ ու վազեց, մէջտեղ եկաւ կռիւ, ծեծ։ Ու ամէնքը փախչում էին վախեցած, փուշ ու տատասկ նրանց շորից պինդ կպած, քաշում էին, ճամփան փակում, հարուածում, մէկից թեւնոց, մէկից գլխարկ թռցնում։ Այդ խաղը ես նրանց գլխին սարքեցի, մենակ քաղցրիկ պիրամոսին թողեցի Տիտանիայի ննջարանի մօտ կեցած։ ճիշտ այդ պահին իմ թագուհին արթնացաւ ու տեսնելով դէմը ցցուած հրէշին՝ վայրկենապէս սիրահարուեց այդ էշին։

OBERON.
Իմ ցանկացածից յաջող է արուած։ Իսկ աթենացու աչքը ցօղեցի՞ր այն սիրոյ հիւթով, որ պատուիրեցի։

PUCK.
Այո՛, ինչպէս ասացիր։ Քնած տեղը բռնեցի, հիւթը աչքին քամեցի։ Այն աղջիկն էլ նրա կողքին էր քնած, զարթնելու պէս աչքի կ՝ընկնի անկասկած։

[Demetrius and Hermia enter.]

OBERON.
Սո՛ւս, մի կողմ քաշուենք, այդ աթենացին այստեղ է գալիս։

PUCK.
Օրիորդը նոյնն է, պատանին՝ ուրիշ։

DEMETRIUS.
Ինչո՞ւ ես ազնիւ քո սիրահարին յանդիմանում չար, այդ կշտամբանքը պահիր վատագոյն թշնամուդ համար։

HERMIA.
Ես քեզ պարզապէս յանդիմանեցի, բայց կը համարեմ այժմ թշնամի եւ ժանտ անէծքի միայն արժանի, քանզի վախ ունեմ, պատճառը դու ես։ Եթէ լիսանդրին դու ես սպանել իր քնած տեղում՝ մինչեւ ծունկ խրուած արեան հեղեղում, ինձ էլ սպանիր եւ լող տուր խորունկ յորձանքում արեան, արեւը այնքան հաւատարիմ չէր իր սիրած օրուան, որքան լիսանդրը՝ սիրած աղջկան։ Միթէ՞ կարող էր նա ծածուկ փախչել քնած հերմիայից։ Ո՛չ, աւելի շուտ ես կը հաւատամ, որ երկրագունդը կարող է ճեղքուել, եւ նրա միջով լուսինը ցատկել իր եղբօր կողքին՝ շփոթի մատնած հակոտնեայ կողմի բնակիչներին, քան թէ լիսանդրի դաւաճանութեան։ Ո՛չ, չեմ հաւատում, դու ես սպանել նրան, անզգա՛յ, դաժան, այդպիսի չար դէմք սպանողն ունի։

DEMETRIUS.
Ո՛չ, այդպիսի դէմք սպանողն ունի։ Դո՛ւ ինձ խոցեցիր, բիրտ անգթութեամբ սիրտս ճեղքեցիր, եւ դու ես դարձեալ, մարդասպանուհի, քո պայծառ, անբիծ լոյսով շողշողում, ինչպէս վեներան՝ երկնակամարում։

HERMIA.
Իսկ դա ինձ կ՝օգնի՞ գտնել լիսանդրին։ Ազնիւ բարեկամ, ասա՛, ո՞ւր է նա։ Ե՛տ տուր ինձ նրան։

DEMETRIUS.
Լաւ չէ՞ նրա դին ես շներին տամ։

HERMIA.
Օ՛, շունը ինքդ ես։ Կորի՛ր, քոսոտ շուն, կորի՛ր, անզգամ, դու ինձ հանեցիր համբերութիւնից, պատասխան տուր ինձ, ուրեմն դո՞ւ ես սպանել նրան։ Անիծեալ

լինես, եւ մարդ կոչուելու յաւէտ անարժան։ Օ՛, գէթ մի անգամ մի ճիշտ խօսք ասա, վախեցար նրա աչքերին նայել, եւ քնած տեղը՞ դու սիրտ արեցիր նրան սպանել։ Մի այս քաջի՛ն տես, չէ՞ որ այդ գործը թունաւոր օձին, իժին է վայել, Օ՛, ինչ եմ ասում, քո թոյնն աւելի զօրեղ է ազդում, ոչ մի օձ այդքան թունոտ չի խայթում։

DEMETRIUS.
Իզուր ես այդպէս զայրանում անդէպ, նրա արեան մէջ ես մեղաւոր չեմ, կարծեմ լիսանդրը նոյնիսկ մեռած չէ։

HERMIA.
Ո՞ղջ է, ուրեմն, եւ չի՞ սպանուած։

DEMETRIUS.
Իսկ ի՞նչ կը ստանամ ես դրա դիմաց։

HERMIA.
Մի արտօնութիւն, որ իմ երեսը չտեսնես անդարձ, որ քո ատելի ներկայութիւնից հեռանամ այսպէս ու չտեսնեմ քեզ, թէկուզ ողջ լինի կամ նոյնիսկ մեռած։ [Exits.]

DEMETRIUS.
Սաստիկ յուզուած է, եւ անօգուտ է ետեւից գնալ, լաւ է՝ ես փոքր-ինչ անտառում մնամ։ Իմ վիշտը նաեւ ծանր է նրանով, որ սնանկացած քուն-պարտապանը, աչքերիս մօտից ծածուկ փախչելով, դժուարանում է պարտքը վճարել։ Գուցէ այդ պարտքի մի մասը առնեմ, եթէ կիսաքուն այստեղ սպասեմ։ [Lays down to sleep.]

OBERON.
Այդ ի՞նչ ես արել. դու սխալուել ես, աւա՛ղ, չարաչար, այդ կախարդ հիւթը տարել քամել ես աչքում սիրավառ, այդ սխալմունքից ոչ թէ մի յամառ սիրտ է յաղթուել, այլ անկեղծ սիրոյ մի կապ է խախտուել։ հողմից արագ անտառի մէջ պտտիր, աթենացի հեղինէին շուտ գտիր։ Նրա միակ հիւանդ արիւնն է սէրը, ախ քաշելուց գունատուել են այտերը։ Մի հնարքով շուտ այստեղ բեր աղջկան, մինչեւ գալդ կը

հմայեմ ես նրան։

PUCK.
Ես գնացի, գնացի, հապա նայիր, աչքդ բաց, ո՞ր թաթարի նետն է այդքան սրընթաց։ [Exits.]

OBERON.
Ո՛վ դու ծաղիկ կարմրագոյն, կուպիդոնի նետի թոյն, ծաղկի հիւթը դեմետրիոսի աչքի մէջ քամելով։ հիւթդ կաթ-կաթ թող ծորի սրա աչքի խնձորին, որ երբ տեսնի օրիորդին, թուայ օրիորդը նրան պայծառ, ինչպէս վեներան։ Երբ որ զարթնես դու քնից ճարդ խնդրիր նրանից։ Զգոյշ, գալիս է կինը, բախտը նրա ձեռքին է։

PUCK.
[Entering.] Ով գնդապետ օդեղէն, ահա եկաւ հեղինէն, իմ փոխս ընկած պատանին սէր է հայցում նրանից, տեսարան է հրճուալից, պիտի տեսնենք շատ բաներ, ա՛խ, հողածին անմիտներ։

OBERON.
Մի կողմ քաշուենք ես ու դու։ Այդ աղմուկից հէնց հիմա դեմետրիոսը կ՝արթնանայ։

PUCK.
Եւ երկուսով կարօտից կ՝ընկնեն մէկի ետեւից, մենք կը մեռնենք ծիծաղից՝ մարդկանց ցաւերն անհամար հրճուանք դարձած մեզ համար։

[Lysander and Helena enter.]

LYSANDER.
Ինչպէ՞ս, կարծում ես, թէ քեզ ծաղրո՞ւմ եմ, ծաղրը արցունքով չի պոռթկում երբեք, տես, ես լալիս եմ, երբ որ երդւում եմ, արցունքով ծնուած երդումը սուրբ է։ Միթէ՞ իմ խօսքը մի հեգնանք է փուչ, իմ սրտի շիտակ վկայութեամբ լուրջ։

HELENA.
Օ՛, գնալով դու դառնում ես դիւային. մէկ երդումդ՝ նոր երդումով ես մերժում։ Նոյն երդումը դու տուել ես հերմիային, բան չես թողել երդումներիդ կշեռքում։ Մեր երկուսին տուած խօսքդ բաղդատիր, երկու երդում տար, կշեռքի թաթին դիր, կշռաքարում չի ծանրանայ ոչ մի թաթ, երկու քաշն էլ հաւասար են, թեթեւ, ինչպէս փուչ հեքիաթ։

LYSANDER.
Խելքս տեղը չէր նրան երդուելիս։

HELENA.
Նոյնն է եւ հիմա՝ դաւաճանելիս։

LYSANDER.
Դեմետրիոսը նրան է սիրում, քեզ չի սիրում նազելիս։

[Hermia enters as Demetrius wakes up.]

DEMETRIUS.
Օ՛, իմ հեղինէ, չքնաղ դիցուհի, սուրբ յաւէրժահարս, հրաշք երկնային, գանձ երանելի, աչքերդ ինչի՞ նմանեցնեմ ես. բիւրեղեայ ասեմ՝ բիւրեղն աղօտ է։ Օ՛, գեղեցկուհի, կեռասների պէս շուրթերդ հասուն տաք համբոյրի են վառուած սպասում։ Տաւրոսի ձիւնը՝ այդ անբիծ, սառած սպիտակութիւնը, որ արեւելեան հողմով է մաղւում, ագռաւ է թւում, երբ բարձրացնում ես քո քնքուշ ձեռքը, ներիր իմ մեղքը, Օ՛, թոյլ տուր՝ պագնեմ այս իշխանուհուն՝ անբիծ մաքրութեան, այս սուրբ կնիքը՝ գերերջանկութեան։

HELENA.
Ա՛խ, ինչ ամօթ է։ Օ՛, ինչ դժոխք է։ Տեսնում եմ հիմա, դուք ինձ դարձրել էք ծաղրի առարկայ։ Լինէիք փոքր-ինչ կիրթ եւ կարեկից, այդքան չարութեամբ չէիք տանջի ինձ։ Միթէ՞ ինձ ատել չէք կարող ջոկ-ջոկ, որ միացել էք հոգով անողոք եւ ծաղրում

էք ինձ անողորմաբար։ Եթէ լինէիք իրօք տղամարդ, ձեր ձեւին յարմար մի ազնիւ կնոջ դուք չէիք տանջի այդպէս վայրաբար։ Ուխտում էք, երդւում, իմ կազմուձեւը շռայլ գովում էք, թէեւ լաւ գիտեմ՝ ձեր ամբողջ սրտով դուք ինձ ատում էք։ հերմիայի համար քիչ մնայ երկուսդ իրար սպանէք, բայց միացել էք, որ հեղինէին ծաղրով կործանէք։ Ի՜նչ ասպետութիւն, ի՜նչ քաջութիւն է, աւա՜ղ, ձեր կողմից արտասուք քամել մի խեղճ աղջկայ թշուառ աչքերից ձեր չար հեգնանքով։ Անազնիւ խաղ է անպաշտպան կնոջ վրայ ծիծաղել եւ խեղճ օրիորդի համբերանքը հեզ զուարճանալու միջոց դարձնել ձեզ։

LYSANDER.
Վերջ տուր, դեմետրիոս, դու բարեխիղճ չես, հերմիային ես սիրում, այդ քաջ գիտեմ ես, հերմիայի սէրը յօժար, անվրդով ես քեզ եմ զիջում իմ ամբողջ սրտով, իսկ հեղինէի սէրը աննման տուր ինձ, վայելեմ մինչեւ գերեզման։

HELENA.
Ո՞ր խեղկատակն է ծաղրում ձեզ նման։

DEMETRIUS.
Լիսանդր, հերմիային քեզ պահիր անդարձ, սիրել եմ նրան, այդ սէրը գնաց։ Սիրտս նրա մօտ լոկ մի հիւր էր խորթ, այժմ իր տանն է՝ հեղինէի մօտ, եւ անվերադարձ։

LYSANDER.
Ճիշտ չէ, հեղինէ։

DEMETRIUS.
Մի այպանիր այն, ինչ քեզ յայտնի չէ, թէ չէ չարաչար ծեծ կուտես մի լաւ, տես, հոգեհատոր սիրուհիդ եկաւ։

HERMIA.
[Entering.] Խաւար գիշերը, խլելով լոյսը մեր դիտողութեան, լարում է թափը մեր տեսողութեան։ Նա, քօղ քաշելով մութի մէջ աչքին, կրկնակի ուժ է տալիս

ականջին։ Ես քեզ, լիսանդր, աչքով չգտայ, իմ լսելիքը ինձ ուղիղ բերեց քո ձայնի վրայ։ Ինչո՞ւ լքեցիր դու ինձ կոպտաբար։

LYSANDER.
Երբ սէրն է կանչում, ինչո՞ւ ուշանալ։

HERMIA.
Իսկ այդ ի՞նչ սէր է, որ քեզ, լիսանդր, խլեց իմ կողքից։

LYSANDER.
Լիսանդրի սէրը։ Սէրն այդ հրեղէն ինձ մղեց դէպի չքնաղ հեղինէն, որի աչքերը խաւար գիշերում բոլոր աստղերից պայծառ են շողում։ Ինչո՞ւ ես իզուր ինձ հետապնդում, միթէ՞ պարզ չեղաւ իմ այդ փախուստից, որ դու սոսկալի ատելի ես ինձ։

HERMIA.
Քո այդ խօսքերը չեն բխում սրտից, չեմ հաւատում քեզ։

HELENA.
Տեսէք, նա էլ է սրանց դաւակից. այժմ տեսնում եմ, միաբանուել են նրանք երեքով, որ ինձ ձեռք առնեն մի չար ծաղրանքով։ Ապերախտ հերմիա, նենգ ընկերուհի, դո՞ւ էլ սրանց հետ միաբանել ես, գաղտնի դաւակցել, որպէսզի տանջես ինձ այդ բիրտ խաղով։ Միթէ՞ փոխադարձ մտերմութիւնը, մեր քրոջական սիրոյ ուխտերը, միասին վատնած քաղցրիկ ժամերը նզովում էինք, որ ժամանակը սաստիկ սրընթաց մեր հրաժեշտի օրն է մօտեցնում։ Ա՜խ, այդ ամէնը միթէ՞ մոռացուեց։ Մոռացուե՞ց միթէ աշակերտական մեր քաղցրիկ սէրը, միամիտ, անհոգ մեր մանկութիւնը։ Ես ու դու, հերմիա, երկու վարժ, ճարտար դիցուհու նման նոյն ծաղիկն էինք ասեղնագործում նոյն օրինակից՝ մէկ բարձի վրայ կողք կողքի նստած, ինչպէս նոյն երգն էինք երգում միաձայն՝ մեր ձեռքով, ձայնով, սրտով ու մտքով ասես անբաժան մի մարմին դարձած։ Այսպէս միասին մենք աճում էինք երկու երկուորեակ կեռասի նման, արտաքուստ թէեւ իրարից զատուած, բայց

ներքուստ կապուած, զոյգ հատապտուղ՝ մէկ կոթի վրայ, երկու ջոկ մարմին, սրտով, սակայն, մէկ, ինչպէս երկու գոյն՝ նոյն ազգատոհմի զինանշանին համատեղ զուգուած եւ վերջաւորուած նոյն գլխազարդով։ Եւ դու ուզում ես խափանել մեր այդ սէրը վաղեմի եւ միանալով այս տղամարդկանց՝ ծաղրո՞ւմ ես թշուառ քո ընկերուհուն։ Այդ աղջկական, բարեկամական վարմունք չէ երբեք, մեր ամբողջ սեռը քեզ կը պարսաւի, թէեւ հարուածդ լոկ ինձ է դիպչում։

HERMIA.
Ապշած եմ քո այդ ցասկոտ խօսքերից, ես չեմ ծաղրում քեզ, այլ, երեւում է, դու ես ծաղրում ինձ։

HELENA.
Միթէ՞ Լիսանդրին դու չես պատուիրել, որ իբրեւ ծաղր հետապնդի ինձ, գովաբանի իմ աչքերը, դէմքը։ Եւ Դեմետրիոսին՝ քո միւս սիրած երկրպագուին, որը քիչ առաջ ոտքով հարուածում, վտարում էր ինձ, միթէ՞ չես դրդել, որ ինձ անուանի չքնաղ դիցուհի, սուրբ յաւէրժահարս, երկնային հրաշք, չնաշխարհիկ գանձ։ Ինչո՞ւ համար է այդ խօսքերն ասում մի խեղճ աղջկայ, որին ատում է։ Ինչո՞ւ Լիսանդրը իր հոգում վառուող սէրդ ուրացաւ եւ ինձ է երդւում բոցավառ սէրն իր, իսկ այդ եղել է միայն քո դրդմամբ, քո հաւանութեամբ։ Ի՞նչ անեմ, որ ես քեզ բաժին ընկած շնորհքից զուրկ եմ, քո չափ երջանիկ սէր չեմ վայելում։ Ա՛խ, ես դժբախտ եմ եւ կարօտ սիրոյ, սիրում եմ, սիրուս արձագանք չկայ, եւ դու առաւել պիտի կարեկցես, ոչ թէ ծաղրես ինձ։

HERMIA.
Ի՞նչ է պատահել, բան չեմ հասկանում։

HELENA.
Այո՛, ձեւացրու, թէ վշտանում ես, լուրջ կերպարանք առ, բայց բերան ծռիր, երբ մէջքս դարձնեմ։ Աչք-ունքով արէք, ծաղրէք շարունակ, այդ ճարտար խաղով կը դառնաք անմահ, խիղճ ունենայիք կամ բարեկիրթ վարք, ինձ չէիք ընտրի ծաղրի առարկայ։ Մնացէք բարով։ Մեղքն իմն է, մասամբ, բայց ես այդ մեղքը կ՝ուղղեմ իմ

մահով կամ անվերադարձ ձեզնից գնալով։

LYSANDER.
Կա՛ց, իմ հեղինէ, ինձ լսիր, անգի՛ն, Օ՛, սէր իմ, կեանք իմ, չքնաղ հեղինէ։

HELENA.
Օ՛, սքանչելի։

HERMIA.
Սիրելիս, նրան մի ծաղրիր այդպէս։

DEMETRIUS.
Կը ստիպեմ, եթէ խնդրելն անզօր է։

LYSANDER.
Դու ստիպելով, իսկ նա խնդրելով չէք կարող ազդել. սպառնալիքը եւ աղերսները այստեղ անզօր են։ Չքնաղ հեղինէ, ես քեզ սիրում եմ, կեանքովս եմ երդւում, պատրաստ այդ կեանքը զոհել քեզ համար՝ ապացուցելով թէ ստում է նա, ով որ ասում է, թէ քեզ չեմ սիրում։

DEMETRIUS.
Իսկ ես ասում եմ, որ քեզ նրանից ուժգին եմ սիրում։

LYSANDER.
Ասում ես՝ սրով, ապացոյց տուր ինձ։

DEMETRIUS.
Ուրեմն գնանք։

HERMIA.
Սպասիր, լիսանդր։

LYSANDER.
Սո՛ւս, եթովպուհի։

DEMETRIUS.
Մի սրա՛ն տեսէք, ձեւացնում է, թէ խիստ գազազած է, սակայն չի գալիս։ Ե՛կ գնանք, ա՛յ մարդ։

LYSANDER.
Հեռացի՛ր, կատո՛ւ, թող ինձ, անարգ փուշ, թէ չէ թափ տալով ես քեզ օձի պէս կը պոկեմ ինձնից։

HERMIA.
Ինչ բիրտ ես դարձել։ Ինչո՞ւ դու յանկարծ այդպէս փոխուեցիր։ Իմ քաղցրիկ սիրած։

LYSANDER.
Ես՝ քո սիրածը՞։ Դուրս կորիր, բոշայ, սեւամորթ խափշիկ, դու փսխողական գարշ դեղախառնուրդ։

HERMIA.
Կատակ չե՞ս անում։

HELENA.
Այո՛, քո խօսքը նոյնպէս կատակ է։

LYSANDER.
Դեմետրիոս, ես հաստատ եմ խօսքիս։

DEMETRIUS.
Խօսքդ հաստատիր գրաւականով, ես նկատում եմ, որ մի տկար ձեռք կաշկանդում

է քեզ, վստահ չեմ խօսքիդ։

LYSANDER.
Ի՞նչ է, ուզում ես, որ նրան ծեծե՞մ, զարկե՞մ սպանե՞մ, նրան ատում եմ, այդ էլ հերիք է։

HERMIA.
Ինչը՞ կարող է քո ատելու չափ ցաւ պատճառել ինձ։ Պատճառը ի՞նչ է, որ ատում ես ինձ։ վա՜յ ինձ, սիրելիս, ի՞նչ պատահեց քեզ։ Միթէ՞ հերմիան չեմ, միթէ՞ այլեւս դու լիսանդրը չես։ Ես առաջուայ պէս դեռ գեղեցիկ եմ։ Դու դեռ այս գիշեր ինձ սիրում էիր, եւ դեռ այս գիշեր դու ինձ լքեցիր, ինչո՞ւ լքեցիր, ներէք, աստուածներ, միթէ՞ լքեցիր դու ինձ լրջօրէն։

LYSANDER.
Այո՛, լրջօրէն, իմ կեանքը վկայ, եւ չեմ փափագում բնաւ քեզ տեսնել, կտրիր քո յոյսը, վերջ տուր հարցերիդ եւ կասկածներիդ, եւ ստոյգ մի բան հաստատ իմացիր, կատակ չեմ անում, ես քեզ ատում եմ, իսկ հեղինէին սիրում եմ, սիրում։

HERMIA.
Օ՛, վայ ինձ, վա՜յ ինձ։ Օ՛, դու խաբեբայ, սիրոյ ծաղկի որդ դու սիրոյ նենգ գորշ գիշերով եկել եւ գողացել ես սիրածիդ սիրտը՞։

HELENA.
Հիանալի է։ Ոչ պատկառ ունես, ոչ օրիորդական ամօթխածութիւն, ոչ պարկեշտութեան մի նշոյլ անգամ։ Միթէ՞ ուզում ես իմ խոհեմ լեզուն դրդել անհամբեր, կոպիտ խօսքերի։ Ամօ՜թ քեզ, ամօ՜թ, երկերեսանի տիկնիկ կեղծաւոր։

HERMIA.
Ես՝ տիկնի՞կ, միթէ՞։ ՕհՕ՛, հասկացայ, թէ դա ինչ խաղ է։ Նա բաղդատել է մեր հասակները եւ պարծեցել է, որ ինքը ինձնից բարձրահասակ է, եւ իր այդ լոլօզ, երկար հասակով, իր երկար մարմնով գերել է նրան։ Եւ մեծացել ես դու նրա

աչքում, որովհետեւ ես թզո՞ւկ եմ, կա՞րճ եմ։ Ես ինչքա՞ն եմ կարճ, խօսիր, ներկած ձող, ես ինչքա՞ն եմ կարճ։ Բայց այնքան կարճ չեմ, որ եղունգներս չկարողանան աչքերիդ հասնել։

HELENA.

Պարոններ, թէեւ դուք ինձ ծաղրում էք, բայց աղաչում եմ, պաշտպանեցէք ինձ սրա ճանկերից։ Ես բնուստ չար չեմ եւ շնորհք չունեմ անզգամութեան, երկչոտ եմ, ինչպէս ամէն մի աղջիկ, պաշտպան եղէք ինձ, մի թողնէք՝ ծեծի։ Թէպէտ նա ինձնից ցածր է հասակով, բայց անկարող եմ ես նրան յաղթել։

HERMIA.

Դարձեալ ասում ես՝ հասակս ցածր է։

HELENA.

Օ՜, բարի հերմիա, զուր մի նեղացիր, ես քեզ մշտապէս սիրել եմ, հերմիա, միշտ լսել եմ քեզ, շարունակ պահել քո գաղտնիքները, մի վիրաւորանք ինձնից չես լսած։ Սա միակ դէպքն է, երբ դեմետրիոսին սիրահարուելով՝ նրան յայտնեցի դէպի այս անտառ ձեր ծրագրած փախուստի մասին, նա՝ քո ետեւից, ես՝ իր ետեւից, սիրուց խենթացած թափառում էինք այս անտառի մէջ։ Նա ինձ մերժում էր, հրում իրենից եւ սպառնում էր ծեծել, քացի տալ, նոյնիսկ մեռցնել։ Թողէք, որ հանգիստ այստեղից գնամ, խենթ գլուխս առած՝ կը դառնամ աթէնք եւ քեզ այլեւս չեմ հետապնդի։ Բաց թողէք, գնամ, տեսնո՞ւմ ես, ինչպէս պարզ եմ, միամիտ։

HERMIA.

Շուտ չքուիր, գնա, ո՞վ է արգելում։

HELENA.

Մի անմիտ, չար սիրտ, որ թողնում եմ ես։

HERMIA.

Լիսանդրի կրծքո՞ւմ։

HELENA.
Ոչ՝ դեմետրիոսի։

LYSANDER.
Դու մի վախենա, նա չի յանդգնի քեզ դիպչել երբեք։

DEMETRIUS.
Չի համարձակուի, թէկուզ երկուսով փորձէք յարձակուել։

HELENA.
Օ՜, նա շատ չար է բարկութեան պահին, նա դպրոցում էլ շատ կռուարար էր, փոքր է չնայած, բայց կատաղի է։

HERMIA.
Դարձեալ փոքրիկ է։ Կարճ եմ, փոքրիկ եմ, այդ խօսքն է անվերջ նրա բերանին, ինչո՞ւ էք թողնում, որ նա ինձ ծաղրի։ Կացէք՝ մօտենամ։

LYSANDER.
Հեռու կաց, թզուկ, դու անպէտք փշի պատուաստ ժանգածին, դու մանրիկ հուլունք, դու խոզակաղին։

DEMETRIUS.
Եռանդուն ես շատ, բայց կարիք չունի նա քո եռանդին։ Մենակ թող նրան։ Դու հեղինէի մասին մի խօսիր, մի ձեւացրու քեզ նրան կողմնակից, իսկ եթէ փորձես դու նրան նաեւ չնչին սէր ցոյց տալ, շատ պիտի զղջաս։

LYSANDER.
Աhա ազատ եմ, եկ իմ ետեւից, եթէ քաջ ես, որպէսզի վճռենք ով աւելի շուտ իրաւունք ունի հեղինէի վրայ։

DEMETRIUS.
Ես՝ քո ետեւի՞ց։ Ոչ, եկ միասին համաքայլ գնանք։

[Lysander and Demetrius exit.]

HERMIA.
Այս կռուի ամբողջ պատճառը դու ես։ Կաց, ո՞ւր ես փախչում։

HELENA.
Չեմ վստահում քեզ, չմօտենաս ինձ, վախենամ նորից այտերս ճանկռես։ Թէպէտ կռուի մէջ ճարպիկ ձեռք ունես դու հարուածելու, իմ սրունքներն էլ քոնից երկար են՝ արագ վազելու։ [Runs away.]

HERMIA.
Անչափ ապշած եմ եւ խօսք չեմ գտնում մի բան ասելու։ [Exits.]

OBERON.
Դու վրիպեցիր, այդ քո սխալն էր, կամ դիտաւորեալ դու այդ խորամանկ խաղը սարքեցիր։

PUCK.
Ո՛չ, հաւատա ինձ, ոգիների տէր, որ սխալուեցի։ Որ աթենական հագուստ էր կրում։ Գտածս նոյնպէս աթենացի էր, ուստի յանցանքս այնքան էլ մեծ չէր։ Մասամբ ուրախ եմ, որ բռնած գործս այդպէս ընթացաւ, եւ նրանց վէճը զուարճանալու մեզ առիթ դարձաւ։

OBERON.
Սիրահարները, տես, տեղ են փնտրում մենամարտելու, շտապի՛ր, ռոբին, գիշերուայ քօղը արագ սփռելու, մշուշով ծածկիր երկինքն աստղավառ, աքերոնի պէս թող դառնայ խաւար, ախոյեանները թող մթնում շրջեն, մոլորուեն, տանջուեն, իրար չգտնեն։ Դու մերթ լիսանդրի ձայնով բարբառիր եւ դեմետրիոսին ծուռ

ճամփով շեղիր, մեր դեմետրիոսի նման այպանիր եւ այդ կերպ նրանց իրարից զատիր, մինչ քունը հսկայ չղջիկի նման կապարէ ոտքով, մահուան կեղծ տեսքով նրանց կոպերի վրայ ծանրանայ։ Ապա այդ խոտը լիսանդրի յոգնած աչքին քսիր եւ նրա հիւթի զօրութեամբ ազդու շտկիր ահաւոր սխալանքը հին՝ նրա բիբերը վերադարձնելով նախկին տեսիլքին։ Երբ նրանք զարթնեն, այդ կատակն անհաս կթուայ ցնորք, խաբուսիկ երազ, եւ դարձեալ աթէնք կը վերադառնան ու յաւէտ սիրով կապուած կը մնան։ Այդ գործն յանձնելով քեզ կատարելու՝ ես թագուհուս մօտ կ՝երթամ խնդրելու հնդիկ մանուկին։ Ապա թագուհու աչքերն հմայուած կ՝ազատեմ հրաշք տեսիլից ահեղ՝ հաշտութիւն ու սէր սփռած ամէն տեղ։

PUCK.

Այդ պէտք է արուի սաստիկ շուտափոյթ, քանզի գիշերուայ վիշապները մութ թռչում են, հասնում մինչեւ ամպերը, հեռւում շողում է այգի բանբերը, որի ճաճանչից ոգիք ցիրուցան արագ քշւում են դէպի գերեզման։ Իսկ պարսաւելի ոգիներն ամէն, որ յաւէրժական օթեւան ունեն, ճանապարհների խաչմէրուկներում կամ ծովի խորքում, վաղուց պառկած են իրենց որդնալից գերեզմաններում։ Եւ օրուայ պայծառ լոյսին նայելու իրենց ամօթից՝ նրանք ինքնակամ փախչում են լոյսից ու սեւ գիշերին բարեկամացած՝ յաւէրժ մնում են խաւարով ծածկուած։

OBERON.

Բայց մենք ոգի ենք տարբեր տեսակի։ Զուարճանում ենք ճաճանչների հետ վառ արշալոյսի։ Անտառապանի նման շրջում եմ պուրակից պուրակ, մինչ արեւելքի դարպասը կարմրում, դառնում է կրակ՝ նեպտունի կրծքին ճառագայթների ցոլքեր սփռելով, նրա մուգ կանաչ աղի ջրերը ոսկեզօծելով։ Սակայն շտապիր, եկ չդանդաղենք, լոյսը չբացուած՝ այս գործն աւարտենք։ [Exits.]

PUCK.

Թափառում եմ ես տեղից տեղ, մերթ այստեղ եմ ու մերթ այնտեղ, վախ եմ ազդում ես ամէն տեղ։ Ով ծառ ոգի, նրանց անշեղ մերթ այստեղ տար ու մերթ այնտեղ։ Տես, մէկն եկաւ։

LYSANDER.
[Entering.] Որտե՞ղ ես, խօսիր, գոռոզ դեմետրիոս։

PUCK.
Այստեղ եմ, ապուշ, եւ սուրը ձեռքիս։ Իսկ դու որտե՞ղ ես։

LYSANDER.
Գալիս եմ արդէն։

PUCK.
Ե՛կ, հետեւիր ինձ, այնտեղ գետինը աւելի հարթ է։ Լիսանդրը գնում է ձայնի ուղղութեամբ։

[As Lysander heads off in the direction of the voice Demetrius enters.]

DEMETRIUS.
Խօսի՛ր, լիսանդր, ձայն տուր վերստին։ Ողբալի վախկոտ, այդ ո՞ւր ես փախել, ո՞ր թփի տակ ես գլուխդ թաքցրել։

PUCK.
Վախկոտը դու ես, որ ձայնդ դէպի աստղերը գցած՝ մացառուտներին տալիս ես իմաց, իբրեւ կռուի ես նետւում կրակոտ, բայց թաքնւում ես։ Դէ, ե՛կ, ե՛կ, լակոտ, որ քո կռնակը ճիպոտով դաղեմ։ Պիղծ է, ամօթ է սուր քաշել վրադ։

DEMETRIUS.
Ա՛, դու այստե՞ղ ես։

PUCK.
Ձայնիս հետեւիր, կռուելու համար սա վայել տեղ չէ։

[They exit as Lysander enters.]

LYSANDER.
Ինքը փախչում է, իսկ ինձ բարձրաձայն կռուի է կանչում, հասնում եմ թէ չէ, նորից է կորչում։ Այդ անիրաւը ինձնից աւելի թեթեւ ոտք ունի, ինչքան էլ վազեմ, էլ օգուտ չունի։ ընկայ մութի մէջ, ճամփից շեղուեցի։ Այստեղ էլ հանգչեմ։ Պառկում է գետնին։ Օ՛, եկ, լուսաբուխ դու օր գեղեցիկ, բաւ է քո լոյսից մի ճառագայթիկ, որ դեմետրիոսի հետքը նշմարեմ եւ իմ վրէժը նրանից առնեմ։

[As Lysander falls asleep Demetrius and Puck re-enter.]

PUCK.
Հո՛յ, հո՛յ, հո՛յ, վախկոտ, ինչո՞ւ չես գալիս։

DEMETRIUS.
Ուրեմն կանգնիր, եթէ սիրտ ունես, դու իմ առջեւից անվերջ փախչում ես, շեղում ես ճամփադ, տեղից տեղ փոխւում, երեսիս նայել չես համարձակւում։ հիմա որտե՞ղ ես։

PUCK.
Այստեղ եմ, կը գա՞ս։

DEMETRIUS.
Ծիծաղո՞ւմ ես վրաս։ Յետոյ կը զղջաս, երբ օրուայ լոյսով երեսդ տեսնեմ։ ճամփադ գնա այժմ։ Ես ստիպուած եմ այս ցուրտ մահիճով հասակս չափել, քանզի յոգնած եմ։ Ես քեզ մօտ կը գամ լուսաբացի դէմ։

[As Demetrius lays down to sleep Helena enters.]

HELENA.
Օ՛, դանդաղ գիշեր, Օ՛, երկար գիշեր, տաղտկալի ու նենգ ժամերդ կարճիր։ Սփոփիչ

լոյսեր բեր արեւելքից, որ կարողանամ ետ դառնալ աթէնք, չքուեմ ինձ այրող այս մարդկանց խմբից։ Ով քուն, որ յաճախ հոգսի աչքերն ես փակում ջանադիր, իմ աչքն էլ մի պահ իմ վրայ ծածկիր։ [She lays down to sleep.]

## PUCK.

Եղաւ երե՞ք։ Մէկն էլ գայ, երկու զոյգը չորս դառնայ։ Ահա այդ խեղճն էլ եկաւ։ Կուպիդոնն էլ անիրաւ՝ դարձեալ նրանց սրտին ցաւ։

## HERMIA.

[Entering.] Երբեք չեմ եղել ես այսքան յոգնած, վշտացած այսքան, ցօղով թաթախուած, փշերով քերծուած, անկարող քայլել կամ սողալ առաջ, ոտքերս անզօր են համընթաց շարժուել բարձունքներիս հետ։ Այստեղ կը հանգչեմ, մինչ օրը բացուի։ Երկինք, դու պաշտպան եղիր լիսանդրին, եթէ վճռել ես դուրս գալու մարտի։ [She lays down to sleep.]

## PUCK.

Քնէք սիրով, խորունկ քնով, դեղն այս ծաղկի ճմլեմ գաղտնի, ով սիրահար, քո աչքին։

[Squeezing magic-flower juice in Lysander's eyes.]

## PUCK [cont.]

Աչքդ բանաս, երջանկանաս, որ քո կողքին գտար անգին քո առաջուայ սիրածին։ Թող ըստ գեղջուկ առակի՝ բաժին հասնի ամէնքին, մանոն առնի մանուշին, սա էլ՝ իրա անոյշին։ Խուփ ստանայ ամէն կաւ, ու վերջանայ ամէն ցաւ։ [Exits.]

][][

## ACT IV. SCENE I.

The woods. Lysander, Demetrius, Helena and Hermia are still asleep. Titania and Bottom enter with Peaseblossom, Cobweb, Moth, Mustardseed and other Fairies

attending. Oberon enters unseen.

TITANIA.
Եկ, նստիր այստեղ՝ այս ծաղկոտ մահճին, բեր ինձ խանդակաթ այտերդ սիրեմ, ճոխ վարդեր շաղ տամ լերկ, ճաղատ գլխիդ, մեծ ականջներդ քնքուշ համբուրեմ։

BOTTOM.
Լոբեծիլն ո՞ւր է։

PEASEBLOSSOM.
Էստեղ եմ։

BOTTOM.
Քորիր գլուխս, լոբեծիլ։ Իսկ պարոն սարդաբունն ո՞ւր է։

COBWEB.
Էստեղ եմ։

BOTTOM.
Պարոն սարդաբուն, պատուական պարոն, առէք ձեր նետաղեղը ու էն փշի վրայի բզզացող կարմրատոտիկ մեղուաճանճին սպանէք եւ նրա մեղրի տոպրակը բերէք ինձ։ շատ չտաքանաք, պարոն, որ մեղրի տոպրակը չպատռուի։ Մեծ ցաւ կը լինի սրտիս, եթէ մեղրի մէջ թաթախուես, սինեօր։ Իսկ մանանեխի կուտն ո՞ւր է։

MUSTARDSEED.
Էստեղ եմ, պարոն։

BOTTOM.
Տուէք ինձ ձեր թաթիկը, պարոն մանանեխի կուտ։ Խնդրում եմ, թողէք ձեր էդ քաղաքավարական սիրալիր ձեւերը, պարոն։

MUSTARDSEED.
Ի՞նչ էք կամենում։

BOTTOM.
Առանձին ոչինչ, պատուական պարոն։ Միայն օգնեցէք ասպետ լոբեծիլին՝ ինձ քորելու։ Ես պէտք է վարսավիրի մօտ գնամ։ Ինձ թւում է, որ երեսիս շատ մազ է բուսել։ Իսկ ես մի էնպիսի նազիկ էշ եմ, որ հէնց որ մի մազ է խտուտ տալիս, անպատճառ պիտի քորեմ։

TITANIA.
Չե՞ս հաճի լսել որեւէ նուագ, իմ անուշիկ սէր։

BOTTOM.
Օ՜, ես երաժշտական գերազանց ականջներ ունեմ։ Լաւ, ինձ համար սրտալի մի բան ածէք մեծ դհոլի վրայ։

[Vague rustic music.]

TITANIA.
Ասա, սիրելիս, գուցէ ուզում ես դու մի բան ուտել։

BOTTOM.
Իսկապէս, ուրախութեամբ մի տաշտ լիքը անասնակեր կը ճաշակէի։ Կարող էի ծամել ձեր հրաշալի չոր վարսակը։ Իսկ աւելի մեծ ախորժակով կը խժռէի մի խուրձ խոտ։ Լաւ խոտին, անուշ խոտին ոչ մի բան չի հասնի։

TITANIA.
Ես ունեմ մի շատ փութաջան փէրի, նա քեզ սկիւռի կթերանոցից թարմ ընկոյզ կը բերի։

BOTTOM.

Մէկ-երկու բուռ չոր սիսեռը թարմ ընկոյզից լաւ է։ Բայց աղաչում եմ, թող ձեր ոգիները ինձ նեղութիւն չտան։ Քնել եմ ուզում։

TITANIA.

Քնիր, իմ անգին, ես իմ թեւերը կը փաթաթեմ քեզ, չքուէք, ոգիներ, հանգիստ թողէք մեզ։ Ոգիները գնում են։ Պատատուկն է այսպէս այծերփիկին նազիկ ոլորում, բաղեղն է այսպէս կանացի տարփով փաթաթւում կաղնու կեղեւոտ ոստին։ Ա՜խ, ինչպէս սիրում, պաշտում եմ ես քեզ։

[As they falls asleep in flagrante delicto Puck enters.]

OBERON.

[Approaching.] Բարով, քաջ ռոբին, տեսնո՞ւմ ես դու այս քնքուշ պատկերը՝ թագուհուն փարուած այս աւանակին, նրա խենթ սէրը ճմլում է հոգիս։ Քիչ առաջ նրան տեսայ անտառում այս էշի համար վարդեր փնտրելիս, խիստ պարսաւեցի եւ կշտամբելով թողի հեռացայ, քանզի Տիտանիան պճնել էր սրա քունքերը մազոտ թարմ ու բուրաւէտ ծաղկանց պսակով։ Եւ այն նոյն ցօղը, որ հպարտօրէն ուռչում, շողում էր ծաղկանց կոկոնին արեւելեան ճոխ մարգարիտի պէս, այժմ կանգնած է նրա աչքերի քնքուշ ծաղկի մէջ իբրեւ ամօթի յուսահատ արցունք։ Երբ կշտամբեցի նրան ծաղրանքով, եւ նա փափկելով ներողութիւն խնդրեց, ես պահանջեցի հնդիկ մանչուկին. նա անմիջապէս մանկանը տուեց եւ ոգիներին ուղարկեց նրան իմ փէրիների աշխարհը բերել։ Քանի որ այժմ մանուկն ինձ մօտ է, ես Տիտանիայի կախարդուած աչքը կ՝ազատեմ այդ ժանտ մոլորութիւնից։ Դու էլ, ազնիւ փուք, հանիր այդ թագը այս աթենացի պատանու գլխից, թող նա էլ զարթնի միւսների հետ, նրանց հետ աթէնք դառնայ վերստին եւ այս գիշերուայ դիպուածներն յիշի որպէս երազի անհեթեթ մի խաղ։ Բայց նախ թագուհու աչքերը բանամ։

[Touching her eyelids with the magic-love herb.]

OBERON [cont.]
Դարձիր, ինչպէս որ կայիր, առաջուայ աչքով նայիր օրհնեալ ծաղիկն աստղիկի թող Էրոսից քեզ փրկի։ Զարթնիր, թագուհիս, քաղցրիկ, Տիտանիա։

TITANIA.
Ա՜խ, իմ օբերոն, ի՛նչ երազ տեսայ։ Ես չեմ կարող ստել ինձ թուաց, թէ ես սիրահարուած եմ մի մեծ էշ։

OBERON.
Տես, քո սիրելին պառկած է այստեղ։

TITANIA.
Ուրեմն ճի՞շտ է, որ իմ սիրածը։ Օ՜, ինչ գարշելի կերպարանք ունի, վրան նայելն իսկ սարսափելի է։

OBERON.
Մի պահ լռեցէք։ ռոբին, դու նրա դիմակը հանիր։ Իսկ դու, Տիտանիա, նուագ պատուիրիր։ Թող կախարդական երաժշտութիւնը կաշկանդի նրանց աչքերի քունը։

TITANIA.
Հնչեցրէ՛ք քնի թովիչ մեղեդին։ Մեղմիկ երաժշտութիւն։

PUCK.
Զարթնելիս ապուշ կը դառնայ կրկին։

OBERON.
Ուժգին նուագէք։ Ե՛կ, իմ թագուհի, այժմ ձեռքդ բեր, եկ պարով ցնցենք անտառ, դաշտ ու լեռ։ Իրար միացանք այժմ նոր սիրով, իսկ կէսգիշերին, վաղը մեծ շուքով պիտի յաղթական պարենք ցնծագին դուքս թեսեւսի շքեղ խնջոյքին։ Մենք կ՝օրհնենք նրա պսակն ու տունը եւ ամուսնական երջանկութիւնը։ Այս

հաւատարիմ սիրոյ զոյգերն էլ կը լինեն այնտեղ, որ նոյն գիշերը ուրախութիւնով զուգուեն միատեղ։

PUCK.
Ով իմ արքայ, առաւօտի երգն եմ լսում ես արտոյտի։

OBERON.
Ե՛կ, ուրեմն, թագուհիս, ճախրենք, փախչենք պարելով, գիշերուայ մութ ստուերով երկրի գունդը շուռ կը գանք թափառ լուսնից շատ արագ։

TITANIA.
Ճախրենք, արքայ, եւ պատմիր, թէ ինչ եղաւ, ինչ արիր, երբ այս գիշեր ինձ գտար գետնին քնած անհեթեթ այս հողածին մարդկանց հետ։ Քնածները պառկած են։

[As the Fairies exit Theseus, Hippolyta, Egeus and their Train enter.]

THESEUS.
Մէկը ձեզանից թող գտնի անտառապահին։ Մայիսեան մեր պերճ հանդէսն աւարտուեց, քանի որ այգը արդէն կարմրեց, սիրուհիս այժմ պէտք է շներիս համերգը լսի։ Ձորն արեւմտեան արձակէք նրանց, թող ազատ վազեն եւ շտապ գտէք անտառապահին։ Իսկ մենք, թագուհի, լեռան գագաթը պիտի բարձրանանք՝ լսելու՝ ինչպէս որսաշներիս հաչոցը ուժգին միախառնւում է զիլ արձագանքին։

HIPPOLYTA.
Ես հերակլեսի եւ կադմոսի հետ մի անգամ եղայ կրետէ կղզում. տարել էին, որ ինձ արջաորս ցոյց տան։ Սպարտական մեծ որսաշների կատաղի հաչով հալածում էին նրանք մի արջի։ Երբեք չեմ լսած այդքան կորովի, ցասկոտ աղաղակ։ Երկինք, սար ու ձոր, աղբիւր ու անտառ, ամէն, ամէն ինչ այդ շրջապատում ձուլուել, դարձել էր մի համատարած ամեհի հաչոց։ Երբեք չեմ լսած տարբեր ձայների այդքան ներդաշնակ միաբանութիւն, այդքան քաղցրալուր մոլեգին թնդիւն։

THESEUS.
Իմ բարակներս էլ այդ սպարտական ցեղից են սերուած, լայնաբերան են, մորթով դեղնագոյն, գլուխները կախ, ականջով ցօղ են սրբում խոտերից, ծնկները կեռ են, վզատակերի կաշին կախ ընկած, մեր թեսալիական ցուլերի նման։ վազքով դանդաղ են, բայց երբ հաչում են, նրանց ձայները հնչում են, ինչպէս մատղաշ զանգակներ իրար ետեւից։ Որսաշներով կամ որսորդական ցնծագին փողով երբեք չի լսուել այդքան քաղցր ձայն ո՛չ կրետէում, ո՛չ սպարտայում, ո՛չ թեսալիոյ մէջ։ Ինքդ լսիր, տես։ Բայց կաց, ովքե՞ր են այս փէրիները։

EGEUS.
Իմ դուստրն է այստեղ քնած, իշխան իմ, սա էլ լիսանդրն է։ Սա դեմետրիոսն է։ Իսկ սա, հեղինէն՝ ծերուկ նեդարի դուստր հեղինէն։ Ես զարմանում եմ, ինչպէ՞ս են սրանք այստեղ մէկտեղուել։

THESEUS.
Անկասկած, նրանք, վաղ արթնանալով, աճապարել են մայիսեան տօնին եւ իմանալով մեր նպատակը՝ եկել են այստեղ՝ շնորհ բերելու մեր այս հանդէսին։ Ասա, էգեւս, այս օրը միթէ՞ հերմիայի ընտրութեան վերջին օրը չէ։

EGEUS.
Վերջինն է, տէր իմ։

THESEUS.
Գնա՛, հրամայի՛ր, թող որսորդները, փողեր փչելով, զարթնեցնեն սրանց։

[Everyone slowly starts to wake up.]

THESEUS [cont.]
Բարեւ, բարի լոյս, իմ բարեկամներ, սուրբ վալենտինը արդէն անցել է, հաւքերն անտառի զուգաւորւում են։

## LYSANDER.
Ներեցէ՛ք, տէ՛ր իմ։

## THESEUS.
Խնդրեմ, վեր կացէք։ Գիտեմ, երկուսդ էլ ախոյեան էք թունդ, ինչպէ՞ս պատահեց աշխարհում ազնիւ այս դաշնութիւնը, որ ոխը խանդի կողքին է քնում եւ չի վախենում վրէժից, քէնից։

## LYSANDER.
Այդ հարցին, տէր իմ, զարմանքով պիտի ես պատասխանեմ. երդւում եմ, ես դեռ կէսքուն-կէսարթուն վիճակի մէջ եմ եւ ճշգրտօրէն չեմ կարող ասել, թէ ինչպէս եղաւ, որ այստեղ եկայ։ Բայց ինձ թւում է ուղիղ եմ ասում, ո՛չ, ո՛չ, յիշեցի, ստոյգ այդպէս է, աթէնքից փախչել այնպիսի մի վայր, որ աթենական անգութ օրէնքը չհալածէր մեզ։

## EGEUS.
Բաւ է, իշխան իմ, բաւ է այլեւս, ես պահանջում եմ, որ այդ օրէնքը, մեր հին օրէնքը ամբողջ սաստկութեամբ պայթի իր գլխին։ Սրանք, դեմետրիոս, ուզեցին փախչել, որ քեզ էլ, ինձ էլ խաբեն, կողոպտեն, քեզ՝ քո կնոջից, իսկ ինձ՝ իմ խօսքից, այն խօսքից, որով աղջիկս պէտք է քո կինը լինէր։

## DEMETRIUS.
Չքնաղ հեղինէն ինձ պատմեց, տէր իմ, որ նրանք ծածուկ մտադրուել են անտառ փախչելու։ Կատաղած ընկայ նրանց ետեւից, իսկ իմ ետեւից վազեց հեղինէն՝ սիրուց խելայեղ։ Սակայն չգիտեմ, թէ ինչ զօրութեամբ, բայց, անշուշտ, տէր իմ, ինչ-որ զօրութեամբ հերմիայի հանդէպ ունեցած սէրս ձեան պէս հալուեց։ Ես այդ սէրն հիմա յիշում եմ, ինչպէս մի փուչ խաղալիք, որ ես սիրել եմ մանուկ օրերիս։ Այժմ իմ սրտի սէրն ու հաւատքը, աչքերիս միակ լոյսն ու բերկրանքը հեղինէն է լոկ, ես նրան, տէր իմ, խոստացել էի կնութեան առնել, երբ դեռ հերմիային տեսած չկայի։ հիւանդի նման զզուեցի յանկարծ այդ կերակուրից, առողջանալով իմ ախորժակը ետ եկաւ նորից, այժմ նրան եմ փափագում, սիրում, բաղձում անձկալի

ու նրան պիտի յաւիտեան մնամ ես հաւատարիմ։

THESEUS.

Խենթ սիրահարներ, բախտաւոր ժամի հանդիպեցիք ինձ, ձեր այս զրոյցը մի ուրիշ անգամ կը լսենք նորից։ Էգեւս, կամքդ ենթարկիր կամքիս. այս չորսը մեզ հետ թող տաճար մտնեն եւ ամուսնութեամբ յաւէտ շաղկապուեն։ Առաւօտը խիստ առաջացել է, ուստի մենք որսը կը յետաձգենք մի ուրիշ օրուայ։ Բոլորս ի մի շտապենք աթէնք։ Ուղիղ երեք զոյգ. այնտեղ մենք կ՝անենք երեք հարսանիք՝ կազմակերպելով մի հանդիսաւոր, մեծաշուք խնջոյք։

[Theseus, Hippolyta, Egeus and their Train exit.]

DEMETRIUS.

Ամէն ինչ մանր ու պղտոր է թւում, հեռւում սարերը ասես ցրիւ են եկել ամպերում։

HERMIA.

Կարծես տեսնում եմ բաժանուած աչքով, ամէն ինչ աչքիս զոյգ է երեւում։

HELENA.

Իմն էլ այդպէս է։ Ես գոհար գտայ՝ այդ դեմետրիոսն է, թէպէտ նա իմն է, բայց եւ իմը չէ։

DEMETRIUS.

Իսկ դու վստա՞հ ես, որ մենք արթուն ենք։ Այնպէս է թւում, որ մենք քնած ենք, երազի մէջ ենք։ Չե՞ս կարծում միթէ, որ մի քիչ առաջ դուքսը այստեղ էր եւ մեզ կոչ արեց հետեւել իրեն։

HERMIA.

Հայրս էլ այստեղ է։

HELENA.
Եւ հիպոլիտեն։

LYSANDER.
Դուքսը պատուիրեց, որ մենք իրենց հետ սուրբ տաճար գնանք։

DEMETRIUS.
Իսկ այդ նշան է, որ մենք զարթնել ենք, ուրեմն գնանք եւ ճամփին պատմենք մեր երազները։

[As they all exit Bottom wakes up.]

BOTTOM.
Երբ իմ վերջնաբառի ժամանակը գայ, ձայն տուէք ինձ, եւ ես իսկոյն կը գամ։ Ի՞նչ խօսքից յետոյ եմ խօսելու։ հա՛, յիշեցի։ *«Գեղապայծառ պիրամոս»։* Էհէ՛յ, ո՞ւր էք, պետրոս, սերկեւիլ, սրինգ փուքսահար, կտուց պղնձագործ։ Տէ՛ր իմ աստուած, ամէնքը փախել են եւ ինձ թողել են անտառում քնած։ Ես մի հրաշք երազ տեսայ։ Էնպիսի մի երազ, որ պատմելը վեր է մարդու խելքից։ Էշ է էն մարդը, որ կը կարծի, թէ կարող է բացատրել, թէ էդ ինչ երազ էր։ Երազում տեսայ, որ ես դարձել էի... ոչ մի մարդ չի կարող ասել, թէ ինչ էի դարձել։ Երազում տեսայ, որ ես դարձել էի... որ ես ունէի... ապուշ է էն մարդը, որ կ՝ասի, թէ ես ինչ էի դարձել կամ ինչ ունէի։ Մարդկային աչքը չի լսել, մարդու ականջը չի տեսել, մարդու ձեռքը չի ճաշակել, նրա լեզուն չի ըմբռնել, ոչ էլ մարդկային սիրտը ընդունակ է ասել, թէ իմ երազը ինչ էր։ Ես կը ստիպեմ սերկեւիլին, որ մի տաղ գրի էդ երազի մասին, եւ դա պիտի կոչուի «տապանի երազը», որովհետեւ էդ տապանը ծակ է։ Ես այդ տաղը պիեսի վերջաբանին կ՝երգեմ՝ դքսի առաջ։ Աւելի լաւ կը լինի, եթէ ես դա երգեմ թիսբէի մահուան ժամանակ։ [Exits.]

][][

ACT IV. SCENE II.
Athens. Room in Quince's house. Quince, Flute, Snout and Starveling all enter.

QUINCE.
Մարդ ուղարկեցի՞ք իմանալու՝ տապանը վերադարձե՞լ է տուն, թէ՞ ոչ։

STARVELING.
Ոչ մի լուր չունենք։ Նա անպատճառ կերպարանափոխուած է։

FLUTE.
Եթէ նա չվերադառնայ, ուրեմն ներկայացումը խափանուած է։ Խաղալ չենք կարող։

QUINCE.
Հնարաւոր չէ։ Ամբողջ աթէնքում մի մարդ չես գտնի, որ պիրամոսի դերը նրա պէս յաջող խաղայ։

FLUTE.
Ո՛չ, նա պարզապէս աթէնքի ամենախելօք արհեստաւորն է։

QUINCE.
Ճիշտ է, եւ նմանապէս ամենասիրուն տղամարդը։ Իսկ ձայնը այնքան հրէշալի է, ասես սիրահար լինի։

FLUTE.
Հրաշալի ասա։ հրէշալին, աստուած օրհնի մեզ, շատ երկիւղալի բան է։

SNOUT.
[Entering.] Վարպետներ, դուքսը վերադարձել է տաճարից։ Էդ տաճարում երկու-երեք պարոններ եւ տիկիններ էլ են պսակուել։ Եթէ մեր խաղը յաջողուէր, մենք ամէնքս էլ մարդ կը դառնայինք։

FLUTE.
Ա՛խ, ո՞ւր ես դու, մեր սիրելի գոմշի տապան։ Դու մինչեւ մահդ օրական կէս արծաթից զրկուեցիր։ Նա անպատճառ օրական կէս արծաթ կը ստանար, եւ այն էլ՝ ցմահ։ Թող ես կախուեմ, եթէ դուքսը նրան օրական կէս արծաթ չնշանակէր պիրամոս խաղալու համար։ Պիրամոսի համար նա օրական անպայման կէս արծաթ կը ստանար կամ ոչինչ էլ չէր ստանայ։

BOTTOM.
[Entering.] Ո՞ւր են իմ կտրիճ տղերքը, ո՞ւր են իմ սրտիս կտորները։

QUINCE.
Տապան։ Օ՜, անվեհեր օր, Օ՜, բախտաւոր ժամ։

BOTTOM.
Վարպետներ, ես ձեզ զարմանք բաներ պիտի պատմեմ, բայց մի հարցնէք, թէ ինչ բաներ։ Եթէ պատմեմ, ուրեմն ես ճշմարիտ աթենացի չեմ։ Ես ձեզ ամէն բան կը պատմեմ, ինչպէս եղել է։

QUINCE.
Դէ, պատմի՛ր, լսենք, սիրելի տապան։

BOTTOM.
Իմ մասին ոչ մի խօսք, ինչ-որ ձեզ պիտի ասեմ, էն է, որ դուքսը ճաշել-պրծել է։ վերցրէք ձեր եղած-չեղածը, մօրուքներիդ լաւ թելեր կապեցէք, իսկ ոտնամաններիդ՝ նոր ժապաւէններ ու էս րոպէիս հաւաքուեցէք պալատի առաջ։ Ամէնքդ ձեր դերերը լաւ սերտեցէք։ Կարճ ասած՝ մեր ներկայացումը յաջողուելու է։ Թիսբէն թող մաքուր շապիկ հագնի, իսկ առիւծի դեր խաղացողին չթողնէք, որ եղունգները կտրի, թող նրանք սուտ ճանկերի պէս դուրս ցցուեն առիւծի մորթու տակից։ Եւ որն ամենակարեւորն է, սիրելի դերասաններ, չլինի թէ սոխ կամ սխտոր ուտէք, որովհետեւ մենք պէտք է անուշ հոտ արձակենք մեր վրայից։ Եւ ես կասկած

չունեմ, որ հանդիսատեսները անպայման կ՝ասեն՝ Էս ինչ անուշ պիես է։ Էլ ոչ մի խօսք, հիմա բոլորս դուրս գնանք։ [Exits.]

]|[

## ACT V. SCENE I.

Athens. a room in the palace of Theseus. Theseus enters with Hippolyta, Philostrate, Lords and Attendants.

### HIPPOLYTA.

Անգին թեսեւս, սիրահարների այս պատմածները հրաշք բաներ են։

### THESEUS.

Աւելի հրաշք, քան թէ իրական։ Ես չեմ հաւատում այդ ծիծաղելի առասպելներին, ոչ այդ օդային փուչ հեքիաթներին։ Սիրահարների, խելագարների ուղեղն եռում է, նրանք այնպիսի բաներ են տեսնում, որ հանգիստ խելքին ըմբռնելի չէ։ Լուսնաշրջիկը, խենթ սիրահարը եւ բանաստեղծը սին ցնորքների եւ վերացական մտքի շաղախ են։ Դժոխքում այնքան սատանայ չկայ, որքան տեսնում է խելագար մարդը։ Սիրողի աչքին սեւ հաբեշուհին հեղինէի պէս գեղեցկուհի է։ Բանաստեղծի աչքը իր խելացնոր մոլեգնութեան մէջ անդուլ ճախրում է երկնքից երկիր եւ երկրից երկինք։ Ինչպէս որ ուժգին երեւակայութեամբ կերպաւորուում են ձեւերն անծանօթ, անյայտ իրերի, բանաստեղծն իր գրչով դրանք մարմնաւորում է եւ այդ օդային անյայտ ոչնչին բնակավայր է տալիս եւ անուն։ Երեւակայութեան խաղերն են դրանք, մտքի ցնորքներ։ Եթէ հրճուանք է նա ակնկալում, հրճուանք բերող է աչքին երեւում, եթէ գիշերով վախենայ յանկարծ թուփն էլ հեշտութեամբ թւում է մի արջ։

### HIPPOLYTA.

Սակայն գիշերուայ այդ արկածները, որ մենք լսեցինք, նրանց միաձայն այդ պատմածները առաւելապէս աչքի տեսած են, քան մտքի ցնորք, այդտեղ շատ ստոյգ, ճշմարիտ բան կայ, եղածը թէեւ խիստ անսովոր է եւ զարմանալի։

[Lysander, Demetrius, Hermia and Helena all enter.]

THESEUS.
Ահա՛ եւ եկան ուրախ, երջանիկ սիրահարները։ Ողջոյն, պերճ զոյգեր։ Սէրն ու բերկրանքը թող ձեր սրտերից անպակաս լինի։

LYSANDER.
Հարիւրապատիկ նոյնը մաղթում ենք ձեր գահին, տէր իմ, եւ ձեր սեղանին, ձեր առագաստին։

THESEUS.
Իսկ այժմ եկէք մտածենք, տեսնենք, թէ ի՞նչ խաղերով կամ ի՞նչ պարերով ընթրիքից մինչեւ անկողնաժամը անվախճան ձգուող այս երեք երկար ժամը կրճատենք։ Ո՞ւր է մեր դռան զուարճանքների կազմակերպիչը։ Պատրաստ ի՞նչ ունի։ Չկա՞յ որեւէ մատչելի պիես՝ այս տանջող ժամի ցաւը դիւրացնող։ Փիլոստրատն ո՞ւր է։

PHILOSTRATE.
[Entering.] Ես այստեղ եմ, դուքս։

THESEUS.
Ի՞նչ ես պատրաստել մեզ այս գիշերը զուարճացնելու, ի՞նչ խաղ, ի՞նչ նուագ։ Դանդաղ ժամերը մենք ինչպէ՞ս խաբենք, եթէ ոչ երգով եւ զուարճութեամբ։

PHILOSTRATE.
Ահա ցուցակը մի քանի պատրաստ զուարճալիքի, ընտրեցէք որը արժանի գտնէք։ [Gives a piece of paper.]

THESEUS.
[Reads.] «*Ճակատամարտը կենտաւրոսի հետ՝ տաւիղի վրայ պիտի նուագի եւ*

*պիտի երգի մի ծեր ներքինի՝ աթէնք քաղաքից»:* Սա հարկաւոր չէ։ Ես այն պատմել եմ սիրած թագուհուս իմ մեծ ազգական հերակլի պատուին։ *«Ինչպէս բաքոսեան քրմուհիները՝ գինուց կատաղած, պատառոտում են թրակիոյ երգչին»:* Այդ շատ հին բան է. ես այն տեսել եմ, երբ որ թեբէից յաղթական փառքով տուն վերադարձայ։ *«Ինը մուսաներ ցաւով ողբում են բախտը գիտութեան, որ մեռաւ դաժան աղքատութեան մէջ»:* Սուր երգիծանք է, քննադատութիւն, անպէտք՝ հարսանեաց հանդէսի համար։ *«Պիրամոսի եւ թիսբէի սէրը, տաղտկալի եւ կարճ մի ողբերգ-կատակ»:* Կատակ է եւ ողբ, ձանձրալի եւ կարճ։ Այսինքն՝ տաք ձիւն եւ վառուող սառոյց, անկապ մտքերն այդ ինչպէ՞ս շաղկապենք։

PHILOSTRATE.

Այդ խաղը, տէր իմ, տասը խօսքից է, այդքան կարճ պիես երբեք չեմ տեսած։ Այդ տաս խօսքով էլ նա ձանձրալի է, այդ պատճառով էլ թւում է երկար։ Այնտեղ չէք գտնի ոչ մի խելօք խօսք, ոչ մի կարգին դեր։ Խաղում պիրամոսն իրեն սպանում է, դրա համար էլ ողբերգական է։ Մի անգամ եղայ ես դրա փորձին խոստովանում եմ, իմ աչքը թացուեց անզուսպ ծիծաղից, դեռ այդքան ուրախ արտասուած չկամ։

THESEUS.

Ովքե՞ր են խաղում։

PHILOSTRATE.

Աթենացի պարզ, հասարակ մարդիկ, կոշտացած ձեռքով արհեստաւորներ, որ բնաւ գլխով աշխատած չկան, այժմ տանջում են իրենց անմշակ յիշողութիւնը այդ նոյն պիեսով, որ անգիր անեն եւ ձեր հարսանեաց հանդէսին խաղան։

THESEUS.

Եւ մենք կը դիտենք։

PHILOSTRATE.

Ո՛չ, ազնիւ տէր իմ, այդ ձեզ յարմար չէ եւ չարժէ տեսնել։ Ես այն դիտել եմ։ Անկատար, անպէտք, մի ոչինչ բան է։ Միակ բանը, որ գուցէ հաւանէք, այդ թշուառ

մարդկանց անկեղծ ձգտումն է. քրտնաջանութեամբ անգիր են արել ամբողջ պիեսը, որ խոնարհաբար գան, մատուցեն ձեզ։

THESEUS.
Անպատճառ պէտք է այդ խաղը տեսնեմ։ Ինչ մատուցւում է ազնիւ տքնութեամբ եւ շիտակ սրտով, երբեք չի կարող անկատար լինել։

[Philostrate exits.]

HIPPOLYTA.
Չեմ սիրում տեսնել թշուառին բեռնուած կամ այնպիսի գործ, որ կատարողի ուժերից վեր է։

THESEUS.
Դու այդպիսի բան չես տեսնի, անգին։

HIPPOLYTA.
Նա ասաց՝ չարժի այդ խաղը տեսնել։

THESEUS.
Չարժած մի բանի արժէք ցոյց տալը՝ շատ բարի գործ է։ Նրանց սխալը մեզ համար կը լինի թեթեւ մի զբօսանք, ուր ազնիւ ճիգ կայ, բայց ուժն է պակաս, արդիւնքի մեղքը յարգանքն է քաւում։ Ուր գնացել եմ, միշտ կրթուած մարդիկ ինձ պատրաստակամ դիմաւորել են կանխամտածուած ողջոյնի խօսքով։ Տեսել եմ՝ ինչպէս սկսել են դողալ, գունատուել յանկարծ եւ խօսքի կէսին կակազել, կապուել, ճառի շեշտերը վախի մէջ խեղդել եւ վերջաբանին խօսքը չաւարտած՝ լռել համրի պէս՝ ինձ ողջոյն չասած։ Բայց հաւատա՛ ինձ, իմ թանկագինս, այդ լռութեան մէջ գտել եմ ողջոյն, ամօթխած պատուի համեստութեան մէջ ես կարդացել եմ աւելի շատ յարգ, քան գոռոզ, փքուն պերճախօսութեան շառաչող լեզւում։ Ուստի կարծում եմ, միշտ այն խօսքն է լաւ, ուր սէրն անկեղծ է, բառերը՝ սակաւ։

PHILOSTRATE.
[Entering.] Տէր իմ, նախերգակն արդէն պատրաստ է։

THESEUS.
Թող առաջանայ։

PROLOGUE.
[Entering.] *«Եթէ մեր խաղից դուք դժգոհ մնաք, մի կարծէք, թէ մենք չուզեցինք դուր գալ, մաքուր սրտից է, ինչ էլ մենք ցոյց տանք, այդ սկիզբով էլ կ՝ուզէինք վերջ տալ։ Եթէ կարծում էք՝ ձեզ կը տրտմեցնենք, աւելի լաւ է՝ իսպառ չգայինք։ Ձեզ զուարճութիւն պիտի պատճառենք, ոչ թէ տրտմութիւն ձեզ մատուցէինք։ Դերասանները բոլորը արդէն, ինչ որ չգիտէք, տալու պատրաստ են»։*

THESEUS.
Այս պարոնը կէտերի վրայ կանգ չի առնում։

LYSANDER.
Նա իր նախերգանքը աշտանակեց մատղաշ նժոյգի պէս՝ առանց շունչ առնելու։ Այստեղից մի լաւ դաս, տէր իմ. բաւական չէ խօսելը, հարկաւոր է նաեւ անսխալ խօսել։

HIPPOLYTA.
Իսկապէս, նա իր նախերգանքը նուագեց, ինչպէս մանուկն է նուագում սրնգի վրայ. հնչիւնը կայ, սակայն չափ չկայ։

THESEUS.
Նրա խօսքը խճճուած շղթայի է նման. բոլոր օղակները կան, բայց խառնուած են իրար։ Յաջորդը ո՞վ է։

[Pyramus, Thisbe, Wall, Moonshine and Lion enter.]

PROLOGUE.

*«Զուր մի այլայլուէք, տէրեր եւ տիկնայք, քանի դեռ խաղը չի ներկայացուած, սա պիրամոսն է, եթէ կամենաք, այս սիրուն կինն էլ՝ թիսբեն, անկասկած։ Այս մարդը այստեղ քարով ու խճով պատն է, չար պատը սրանց անյաջող, նրանք խօսում են այս ծակի միջով, եւ մի զարմացէք, գոհ են այդքանով։ Այս մարդը՝ շնով, թփով, լապտերով, լուսնեակի լոյսն է՝ շող տալով բեմին, սիրահարներն այս լուսնեակ գիշերով պիտի հանդիպեն նինոսի շիրմին։ Իսկ այս գազանի անունն է առիւծ, երբ մութ գիշերով թիսբեն մօտեցաւ, սրա գոռոցից սոսկաց, վախեցաւ, փախչելիս խեղճի թիկնոցը ընկաւ, առիւծը վերցրեց արնոտ երախով։ Յետոյ սիրահար պիրամոսն եկաւ, տեսաւ վերարկուն՝ ներկուած արիւնով, իր մեղսոտ սրով, արիւնոտ սրով քաջաբար ճեղքեց կուրծքն իր մոլեգին։ Թիսբեն կանգնած էր թթենու տակին, մօտեցաւ, նրա դաշոյնը հանեց, սիրածի սրով իր կուրծքը ճեղքեց։ Առիւծ, պատ, լուսին, սիրահարներ հէգ աւելի երկար այժմ դուք պատմէք։»*

[Prologue, Pyramus, Thisbe, Lion and Moonshine exit.]

THESEUS.
Շատ պիտի զարմանամ, եթէ առիւծը խօսի։

DEMETRIUS.
Զարմանալու հարկ չկայ, տէր իմ, երբ այսքան էշեր խօսում են, առիւծն էլ կարող է խօսել։

WALL.
*«Անունս է կտուց. այս միջնախաղում, մի պատի դեր եմ ես այստեղ խաղում։ Բայց ես պատկերն եմ այնպիսի պատի, որ իր մէջտեղում ծակ կամ ճեղք ունի։ Պիրամոսն ու թիսբեն յաճախ շշուկով սիրաբանել են այս ճեղքի միջով։ Այս քարը, կիրը, որ տեսնում էք դուք, վկայ են, որ ես այդ պատն եմ ստոյգ։ Սա էլ այդ ճեղքն է՝ աջ ու ձախ կողմից. երկու սիրահար՝ պիրամոսն ու թիսբեն, պիտի գան, ծածուկ այս ճեղքից խօսեն»։*

THESEUS.
Տեսնո՞ւմ ես, թէ կիրն ու կաւը ինչ հիանալի խօսեցին։ Աւելին պահանջել հնարաւոր չէ։

DEMETRIUS.
Ես դրանից խելացի խօսող պատ տեսած չկամ, տէր իմ։

THESEUS.
Սո՛ւս, պիրամոսն մօտենում է պատին։

PYRAMUS.
[Entering.] *«Ով գիշեր դաժան, գիշեր՝ սեւ շաղախ, գիշեր, որ միշտ կաս, երբ օրը անցաւ։ Գիշեր, ո՛վ գիշեր, աւա՜ղ, ա՛խ, աւա՜ղ, իր տուած խօսքը թիսբեն մոռացաւ։ Իսկ դու, ով իմ պատ, քաղցրիկ, սիրուն պատ, մեր կալուածքների միջեւ պինդ քաշուած, իմ թանկագին պատ, քաղցրիկ, սիրուն պատ, բաց արա ճեղքդ՝ ներս նայեմ ապշած։»*։

*[Wall holds up his fingers.]*

PYRAMUS [cont.]
*«Ապրես, բարի պատ, խօսքս յարգեցիր, բայց թիսբեն չկայ, չեմ տեսնում նրան։ Աւա՜ղ, դաժան պատ, դու ինձ խաբեցիր, քարդ անիծուի, խարդախ սուտասան»*։

THESEUS.
Իմ կարծիքով՝ պատն էլ նրան պիտի անիծի, չէ՞ որ նա էլ շնչաւոր է։

PYRAMUS.
Չի անիծի, պարոն, հաւատացնում եմ։ *«Խարդախ սուտասան»* թիսբէի մուտքի բառն է։ Թիսբեն հիմա պիտի ներս գայ, իսկ ես պատի ծակով պիտի մտիկ տամ նրան։ Դուք կը տեսնէք, որ ամէն ինչ ուղիղ էնպէս է լինելու, ինչպէս ասացի։ Ահա՛

Նա էլ եկաւ։

THISBE.
[Entering.] *«Ինձ պիրամուսից բաժանել ես, պատ, ու յաճախ լսել եմ իմ ողբն ու ցաւը, կեռաս շուրթերով համբուրել եմ շատ քո քարն ու կիրը, քո ծեփն ու կաւը»։*

PYRAMUS.
*«Մի ձայն եմ տեսնում։ Թող ճեղքից նայեմ։ Թիսբէիս դէմքը անշուշտ լսեցի. թիսբէ»։*

THISBE.
*«Սէր իմ, սիրած իմ, այդ դու ես կարծեմ»։*

PYRAMUS.
*«Ինչ կ՝ուզես, կարծիր, մի բան իմացիր. ես լիսանդրի չափ նուիրուած եմ քեզ»։*

THISBE.
*«Ես էլ քեզ՝ ցմահ, հեղինէի պէս»։*

PYRAMUS.
*«Շափալը պրոկրոսին այդքան չի սիրած»։*

THISBE.
*«Շափալը ի՞նչ է իմ սիրոյ դիմաց»։*

PYRAMUS.
*«Օ՜, մի համբոյր տուր այս ճեղքովն անգութ»։*

THISBE.
*«Ճեղքն եմ համբուրում, ոչ թէ քաղցրիկ շուրթ»։*

PYRAMUS.
*«Կը գա՞ս, հանդիպենք Նինոյի շիրմին»։*

THISBE.
*«Ա՜խ, ողջ կամ մեռած, կը գամ, իմ անգին»։*

WALL.
*«Պատը զուր կանգնած էլ ինչո՞ւ մնայ, դերս վերջացրի, ուրեմն գնամ»։*

[Wall, Pyramus and Thisbe exit.]

THESEUS.
Ուրեմն երկու հարեւանների միջի պատը խորտակուեց։

DEMETRIUS.
Տեղն է. ինչո՞ւ էր նրանց գաղտնիքները լրտեսում։

HIPPOLYTA.
Այսքան տխմար բան կեանքում չեմ լսած։

THESEUS.
Այդ կարգի ամենալաւ թատերախաղն էլ լոկ մի ստուեր է, եւ դարձեալ ամենավատն էլ վատ չէ, եթէ երեւակայութիւնը օգնութեան է հասնում։

HIPPOLYTA.
Այդ օգնութիւնը մեր երեւակայութիւնը պիտի հասցնի եւ ոչ թէ նրանց։

THESEUS.
Եթէ մեր երեւակայութիւնը աւելի պակաս չլինի, քան իրենք են երեւակայում իրենց մասին, նրանք կարող են կարծել, թէ իրենք երեւելի մարդիկ են։ Ահա գալիս են երկու ազնուական գազաններ՝ լուսինը եւ առիւծը։

[Lion and Moonshine enter.]

LION.
*«Ով ազնիւ տիկնայք՝ վախկոտ, լեղաճաք, որ մուկ տեսնելիս ճչում են անզօր, ինչպէս պիտ ցնցուէք, սարսափից դողաք, երբ որ մռնչայ առիւծն ահաւոր։ Ես ատաղձագործ Սնուկն եմ, լսէք, առիւծի մորթով առիւծ եմ, տեսէք, եթէ լինէի իսկական առիւծ, ես կորած էի հէնց այստեղ վաղուց»։*

THESEUS.
Շատ հեզաբարոյ եւ խելամիտ գազան է։

DEMETRIUS.
Իմ տեսած գազաններից սա ամենաբարին է, տէր իմ։

LYSANDER.
Այդ առիւծը իր քաջութեամբ կատարեալ աղուէս է։

THESEUS.
Ճշմարիտ է. իսկ խելքով՝ կատարեալ սագ։

DEMETRIUS.
Այդպէս չէ, տէր իմ, որովհետեւ նրա քաջութիւնը չի կարող յաղթահարել նրա խելքը, մինչդեռ աղուէսն իր խելքով սագին յաղթում է։

THESEUS.
Յամենայն դէպս, նրա խելքը չի կարող ընկճել նրա քաջութիւնը, որովհետեւ սագը երբեք աղուէսին չի յաղթում։ Բայց այդ բանը թող ինքը վճռի իր սեփական խելքով, իսկ մենք լսենք, թէ ինչ է ասում լուսինը։

MOON.
*«Եղջերաւոր լուսին է այս լապտերը»։*

DEMETRIUS.
Նա այդ եղջիւրները իր գլխին պիտի կրէր։

THESEUS.
Դա լիալուսին է, եւ եղջիւրները անհետացել են իր պարունակի մէջ։

MOON.
*«Եղջերաւոր լուսին է այս լապտերը, իսկ ես խաղում եմ լուսնի մարդու դերը»։*

THESEUS.
Այդ ամենամեծ սխալն է. մարդը պէտք է մտցուած լինէր լապտերի մէջ։ Էլ ինչ լուսնի մարդ, երբ լուսնի վրայ չի։

DEMETRIUS.
Նա վախենում է այնտեղ մտնել ճրագի պատճառով, որովհետեւ, տեսէք, ճրագի պատրոյգն արդէն հանգչում է։

HIPPOLYTA.
Ես լուսնից ձանձրացայ։ Երանի՜ թէ մայր մտնէր։

THESEUS.
Նրա խելքի փոքրիկ ցոլքից երեւում է, որ նուաղելու վրայ է, բայց եւ այնպէս, ի սէր քաղաքավարութեան, պիտի համբերենք, մինչեւ մայր մտնի։

LYSANDER.
Շարունակի՛ր, լուսին։

MOON.
Ամէնը, ինչ որ պիտի ձեզ ասեմ, էս է. էս լապտերը լուսնակն է. ես լուսնի միջի մարդն եմ, էս փշոտ թուփը իմ թուփն է, էս շունն էլ իմ շունն է։

DEMETRIUS.
Այդ ամէնը պիտի լապտերի մէջ լինէր, որովհետեւ դրանք բոլորն էլ լուսնաբնակ բաներ են։ Բայց, սո՜ւս, թիսբեն է գալիս։

THISBE.
[Entering.] *«Սա է շիրիմը ծերուկ Նինոյի։ Իմ սիրածն ո՞ւր է»։*

LION.
[Growls.] Օ՜։

[Thisbe runs away.]

DEMETRIUS.
Լաւ մռնչաց առիւծը։

THESEUS.
Լաւ փախաւ թիսբեն։

HIPPOLYTA.
Լաւ փայլեց լուսինը։ Իսկապէս, լուսինը հիանալի է փայլում։

[Lion rips the Thisbe's cloak and exits.]

THESEUS.
Առիւծը լաւ խածեց թիկնոցը։

DEMETRIUS.
Պիրամոսն եկաւ։

LYSANDER.
Առիւծը չքուեց։

PYRAMUS.
[Entering.] «Շնորհակալ եմ, ո՛վ քաղցրիկ լուսին, քո արեւային շողերի համար։ շնորհակալ եմ, որ այժմ այդպէս փայլում ես պայծառ։ Քանզի քո փայլով, ոսկեղէն լոյսով, ճաճանչով վսեմ չքնաղ թիսբէին ես պիտի տեսնեմ։ [Sings.]

*Mais, arrêtons, ô horreur!*
*Mais, voyons: pauvre chevalier,*
*Quel affreux objet s'offre ici?*
*Mes yeux, voyez-vous?*
*Comment cela peut-il être?*
*Ô ma petite poule, ô ma chère!*
*Ton beau manteau,*
*Quoi donc, est-il teint de sang?*
*Approchez, cruelles furies;*
*Ô destin: venez, venez,*
*Coupez fil et filasse»:*

THESEUS.
Այս փիատութիւնը եւ թանկագին ընկերոջ մահը համարեա թէ կարող են տրտմեցնել։

HIPPOLYTA.
Հաւատացնում եմ, ես այդ մարդուն խղճացի։

PYRAMUS.
*«Աւա՛ղ, բնութիւն, առիւծն ինչո՞ւ դու յօրինեցիր եւ անգին կոյսիս նրա երախով*

*պատառոտեցիր*։ [Sings.]
*Venez, larmes, confondez-vous,—*
*À moi, mon épée, et blesse*
*Le sein de Pyrame:*
*Oui, le sein gauche*
*Où palpite le coeur.*
*Ainsi je meurs, je meurs, je meurs,*
*Maintenant je suis mort,*
*Maintenant je suis parti de ce monde;*
*Mon âme est dans les cieux.*
*Langue, perds ta lumière;*
*Lune, prends la fuite;*
*Et maintenant, meurs, meurs, meurs.*
*Meurs, meurs.»:* [Dies.]

HIPPOLYTA.
Ընդամէնը մի միաւոր է եւ այդքան անգամ մեռայ, մեռայ է ասում։

LYSANDER.
Մի միաւորից էլ պակաս է, որովհետեւ մեռած է։ Մի սնամէջ, փուչ առարկայ։

THESEUS.
Հմուտ վիրաբոյժի օգնութեամբ կարող էր ապաքինուել եւ կը պարզուէր, որ էշ է։

HIPPOLYTA.
Ինչո՞ւ լուսինը գնաց, չսպասեց, որ Թիսբեն իր սիրահարին գտնէր։

THESEUS.
Նա նրան աստղերի լոյսով էլ կը գտնի։ Ահա՛ նա եկաւ, եւ նրա յուսահատութեամբ էլ թատերախաղը կ՝աւարտուի։

[Thisbe enters.]

HIPPOLYTA.
Ինձ թւում է, որ նա այսպիսի մի պիրամոսի համար մեծ յուսահատութեան մէջ չի ընկնի։ Յուսով եմ՝ կարճ կը կապի։

DEMETRIUS.
Մի աննշան փոշեհատ կարող է կշեռքի հաւասարակշռութիւնը խախտել, թէ ում կողմն է առաւելութիւնը՝ պիրամոսի՞, թէ՞ թիսբէի. մէկը՝ իբրեւ տղամարդ, աստուած հեռու տանի, միւսը՝ իբրեւ կին, աստուած օրհնի մեզ։

LYSANDER.
Նա արդէն ուշադիր դիտել է նրան իր հմայիչ աչքերով։

DEMETRIUS.
Եւ հետեւեալ կերպով պիտի ողբայ վրան։

THISBE.
*«Ա՛խ, աչքերդ են փակ, քնա՞ծ ես, հոգեակ»։* Զարթի՛ր, պիրամոս, զարթիր, իմ անգին։ Այս ի՞նչ խոր նինջ է, մեռա՞ծ ես, ինչ է, վա՛յ իմ չար բախտին. խօսի՛ր, աչքդ բաց, շուրթերդ՝ երազ, իսկ քիթը՝ կեռաս, այտերդ՝ դեղին ծաղիկ գարունքի։ Խամրել են, անցել, լացէ՛ք, սիրածներ, իսկ աչքիդ գոյնը՝ կանաչ սխտորի։ Ո՛վ քոյրեր, ելէք, շուտ այստեղ եկէք, չէ՞ որ ձեր ձեռքով խուլթի պէս գունատ անգութ կտրեցիք, արեամբ լուացիք դուք նրա կեանքի մետաքսն անարատ։ Լռի՛ր, իմ լեզու, եւ իմ սուր, հատու, գնա, ողոգիր կուրծքս արիւնով։ [Stabs self.] Թիսբեն այսպէս է իր կեանքն աւարտում, ո՛հ, մնաք բարով, ո՛հ մնաք բարով։ [Dies.]

THESEUS.
Լուսինը եւ առիւծը ողջ մնացին, որ մեռածներին թաղեն։

## DEMETRIUS.

Այո՛, եւ պատը նոյնպէս։

## BOTTOM.

Ո՛չ, համարձակւում եմ վստահեցնել ձեզ. այն պատը, որ բաժանում էր նրանց հայրերին, խորտակուած է։ Կամենո՞ւմ էք տեսնել վերջաբանը կամ լսել բերգամական մի պար, որ մեր երկու դերասանները պիտի կատարեն։

## THESEUS.

Վերջաբան հարկաւոր չէ, ձեր խաղը վերջաբանի կարիք չունի։ Արդարանալու առիթ չկայ։ Բոլոր դերասանները մեռել են, եւ ոչ ոք չի մնացել, որ ամաչի կշտամբանքից։ Եթէ այս թատերագիրը ինքը խաղար պիրամոսի դերը եւ իրեն կախէր թիսբէի ծնկակապով, այն ժամանակ այս ներկայացումը նուրբ կատարմամբ մի շատ երեւելի ողբերգութիւն կը դառնար։ Բայց, անտարակոյս, նա հիմա էլ շատ գեղեցիկ է եւ դուք մեծ առոգանութեամբ եւ զգացմունքով խաղացիք։ Ցոյց տուէք մեզ ձեր բերգամական պարը։

[Everyone dances.]

## THESEUS [cont.]

Ա՛, կէսգիշերուայ երկաթէ լեզուն զարկեց տասներկուս, դէպի առագաստ, ո՛վ սիրահարներ, հասաւ քնելու ժամը դիւթական։ Եթէ գիշերը անքուն անցկացնենք, շատ ուշ կը զարթնենք վաղ առաւօտեան։ Այս ապուշ-անմիտ թատերախաղը գիշերուայ դանդաղ գնացքը կարճեց։ Դէպի անկողի՛ն, իմ սիրելիներ։ Մեր քէֆն ու խինդը այսպէս անընկեր կը շարունակուի դեռ երկու շաբաթ։ [All exit.]

## PUCK.

[Entering.] Առիւծն է քաղցից մռնչում, գայլը ոռնում է լուսնին, երկրագործն է յոգնած ննջում՝ անձնատուր իր սուրբ երազին։ Կրակն է հանգչում կայծ ու կայծ, բարձրաձայն կռնչում է բուն, հիւանդն, այդ կանչից սարսափած, դիմացը շիրիմ է տեսնում։ Գիշերուայ ժամը հասնում է, բացւում են շիրիմները լայն, ու ամէն

շիրմից ելնում է մի մեռած մարդու ուրուական։ Ելնում են եւ սովոր մութին՝ շրջում են մատուռի կողքին։ Իսկ մենք՝ ոգիներ դժոխքի, միշտ մեր թագուհուց անբաժան՝ արեւի առաջին շողքից ցնդում ենք մշուշի նման։ Իսկ այժմ խայտանք անշշուկ, այս ժամը սուրբ է, ոչ մի մուկ թող այստեղ չհանի աղմուկ։ Եկել եմ՝ ձեռքիս ցախաւել, որ յոգնած այս տունը սրբեմ եւ նրա փոշին դուրս թափեմ։

[Oberon, Titania and all the Fairies enter.]

## OBERON.

Այս տան աղօտ ճրագով, մեղմ, առկայծող կրակով իմ ոգիներ ոստոստող, թռէք, ճախրէք ամէն կողմ։ Ինձ հետ մէկտեղ երգեցէք, աշխոյժ, թեթեւ պարեցէք։

## TITANIA.

Նախ խօսքերը սովորէք, երգը բառին ոլօրէք, որ ձեռք ձեռքի թռչկոտենք երգով այս տունը օրհնենք։

[Song and dance.]

## OBERON.

Ով ստուերներ լուսնապերճ, ես ձեր արքան, դուք՝ ոգի, եկէք շրջենք այս տան մէջ, մինչեւ արեւը ծագի։ Նախ օրհնենք մեծ իշխանի առագաստը պսակի, թող այս տան սերունդը նոր յաւէտ լինի բախտաւոր։ Երեք զոյգն էլ սիրահար թող յաւէտ սիրեն իրար։ Եկէք օրհնենք մենք սրանց պայծառ ծնունդը մանկանց, թող նշաններ այլանդակ, ճեղքուած շրթունք եւ պիսակ, որ առատ են ծննդից, հեռու լինեն նրանցից։ Իմ ոգիներ գիշերի, այս սուրբ ցօղով գիշերի օրհնենք եւ՛ դուռ, եւ՛ տանիք, ապարանքն այս շէն ու լիք, թող միշտ լինի երջանիկ։ Խաղաղութիւն, բախտ այս տան յաւիտենից յաւիտեան այժմ թռէք, հեռացէք, լոյսից առաջ ետ դարձէք։

[All exit save Puck.]

PUCK.

Մենք՝ ստուերներս թէ ձանձրացրինք ձեզ, կարող էք իսկոյն ազդել մեզ. այնպէս համարէք, որ դուք նիրհելով մի երազ տեսաք լուսնեակ գիշերով։ Եւ իմ այս նիւթը տկար ու նուազ դուք համարեցիք միայն մի երազ։ Ով ազնիւ տիարք, մի յանդիմանէք, ամէն ինչ կ՝ուղղուի, եթէ մեզ ներէք։ Ես պարկեշտ փուքն եմ, եթէ անհարկի արժանացել եմ անուրախ բախտի, որ այժմ խոյս տամ կշտամբանքներից, խոստանում եմ ձեզ ուղղել ամէն ինչ այլապէս պիտի ստախօս կոչուեմ։ Իսկ այժմ գիշեր բարի ձեզ մաղթեմ, տուէք ձեր ձեռքը, լինենք բարեկամ, ինչ որ խոստացայ, կ՝ուղղեմ անպայման։

[FIN]

**TRANSLATION BY LILIT "BABA" YAGIAN (1978)**

